# Շուշանի երազը

Ս. ՄԿՐՏՉՅԱՆ

Թերթում է ուրախ փոքրիկ Շուշանը
Մայրիկի գնած այբբենարանը,
Ու թրթռում է սիրտը աղջկա.
Ա՜խ, այդ աշունը բա ե՞րբ պիտի գա։

Ինչքա՞ն սպասի արդյոք Շուշանը,
Ե՞րբ է գալու այդ երջանիկ օրը...
Մայրիկը ասաց.—Շուտով, աշնանը,
Երբ որ կհասնեն դեղձն ու սալորը։

Քույրիկն էլ ասաց.—Մի քիչ համբերիր,
Մինչև որ մեկը գա սեպտեմբերի։
Ա՜յ քեզ բան. աշո՜ւն, սալո՜ր, սեպտեմբե՜ր...
Նա տատիկի մոտ վազեց անհամբեր։

—Տատի ջան, տատի, ո՞րը շուտ կգա՝
Սեպտեմբե՞րը, թե՝ աշունը, ասա՛։
—Մատա՛ղ լինեմ ես անուշիկ բալիս,
Նրանք երկուսն էլ մեկտեղ են գալիս...

Իջավ գիշերը խաղաղ ու անուշ,
Առվակը զնգուն օրոր է ասում.
Քնել է խորունկ Շուշանը մուշ-մուշ
Եվ ահա ինչ է տեսնում երազում...

Չորս կողմը նախշուն ծառեր են կանգնած,
Հասել են արդեն դեղձն ու սալորը,
Եվ ինքն էլ ուրախ, մաքուր հագնված,
Դպրոց է գնում, ինչպես բոլորը։

Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ

ՀԼԿԵՄ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՄԱՆԿԱԿԱՆ
ԱՄՍԱԳԻՐ



№ 9 1957 Թ.
ՍԵՊՏԵՄԲԵՐ
ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ
29-ՐԴ ՏԱՐԻ

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. ԳՐ. ԽԱՆՋՅԱՆԻ



Չորրորդ գլուխ

## ԾԻԾԵՌԻ ՊԱՏԳԱՄԱՎՈՐՈՒԹՅՈՒՆԸ։ ՄԻ ՆՈՐ ՆԱՎԱՐԿԵՑՅԱԼ ԱՉՔԻ ԿՈՂՔԻՑ

*—Սո՜ւս, սո՜ւս, սո՛ւս կացեք, մեկը բարձրանում է աստիճաններով։*

*Նախազգուշացնողը Վարդանն էր, որը հատակին չոքած, առջևը փռած մեծ թարթեզի վրա կարմիր մատիտով ինչ-որ գծիկներ էր քաշում, նշումներ անում։ Երվանդն ու Զավենը, որ պպզել էին նրա դիմաց, նույնպես ականջները սրեցին և սակվեցին։*

*Եվ իրոք, քիչ անց դուռը թակեցին։*

*Դուք քարտեզը պահեցեք և դասագրքերը բաց արեք, իբր թե դաս ենք սովորում,—ասաց Երվանդն ու մոտեցավ դռանը, ետ նայեց, նախապես համոզվելու համար՝ ամեն ինչ կարգին է, թե չէ, և նոր միայն դուռը բացեց։*

*—Աաա՜, էս ինչ լավ եղավ. երեքիդ էլ միասին բռնեցինք,—թափով ներս մտնելով բացականչեց երկար ծամերով, բարձրահասակ մի աղջիկ։ Նրա ետևից ներս մտան էլի մի աղջիկ ու մի տղա։—Ինչպես էլ չե՛ք ամաչում։ Մենք հավաքվել ձեր մասին էինք խոսում, իսկ դուք հանգիստ նստել եք տանը...*

*Աղջիկն այնքան արագ-արագ էր խոսում, որ ոչ ենթադրում գտնվող տղաները, ոչ էլ նրա հետևից ներս մտած տղան ու աղջիկը ոչ մի ձայն չէին հանում։*

*—Ու իրենց ձեզ երևակայում եք, թե չորրորդ դասարանի աշակերտ եք, պիոներ եք։ Դուք երկրորդ էլ էս տարի կմնաք, համ ամբողջ դասարանին կխայտառակեք, համ դպրոցին, հա՛մ էլ ամբողջ ջոկատը... բայց այստեղ նա իր սասձն ուղղեց։*

*—Համ էլ ձեր նմանները խայտառակում են ամբողջ ջոկատը...*

*Երվանդը երկար, բազմանշանակորեն սուլեց։ Այդ սուլոցի իմաստը լավ ըմբռնելով, Զավենը ընդհատեց աղջկան։*

---

Սկիզբը տես «Պիոներ» №№ 7, 8 1957 թ.

*—Պա՛հ, պա՛հ, պա՛հ, Գոհարիկ, որտեղից—որտեղ բռնեցիր, հա՜... ռեսպուբլիկա... չէ՛, չէ՛ մի, ամբողջ... երկրագունդը։*

*Բայց ներս մտած մյուս աղջիկն ասաց.*

*—Թողե՛ք կատակները. մենք լուրջ գործով ենք եկել։*

*—Ճիշտ է ասում Սուսանը, մենք լուրջ գործով ենք եկել, իսկ դուք կատակի եք վերածում,—վերջապես խոսեց այցելուներից երրորդը, որ մի գեր և կարճահասակ տղա էր։*

*—Ը՜հը՛,—դարձավ նրան Երվանդը.—դու էիր պակաս։ Այդ երբվանի՞ց ես լուրջ դարձել։*

*—Ես ջոկատի խորհրդի անդամ եմ,—փորձեց արդարանալ գեր տղան, բայց այդ հայտարարությունը այնպիսի կատաղի ծիծաղ առաջացրեց երեք մտերիմների մեջ, որ Զավենը մինչև անգամ փորը բռնած նստեց հատակին։*

*—Ի՞նչ եք հիմար-հիմար ծիծաղում,—բարկացավ Գոհարիկը,—Գառնիկը ճիշտ է ասում, նա ջոկատի խորհրդի անդամ է։ Մենք եկել ենք ամբողջ ջոկատի կողմից։ Ո՞ւր են քո ծնողները։—Դարձավ նա Վարդանին.*

*Նրա փոխարեն Զավենը շտապեց պատասխանել.*

*—Գնացել են, որ մեզ չխանգարեն դասերը պատրաստել։*

*—Օհո՜, ծաղրալից բացականչեց Գոհարիկը, ապա երկար հյուսերը թափահարելով, պաշտոնական տեսքով մի քայլ առաջ գնաց ու վրա տվեց։ Այդ նույնիսկ ավելի լավ է։ Մենք եկել ենք ընկերական զրույցի և ընկերաբար ձեզ հանդիմանելու։ Արդեն մեկ ամիս է, ինչ սկսվել է ուսումնական տարին։ Չորրորդ դասարանը ավարտական դասարան է, բայց դուք այդ չեք գիտակցում ... և «արկտուսներ» եք ստանում։ Ի՞նչ եք մտածում, որտե՞ղ է ձեր պիոներական խիղճը...*

—Դե, մենք, —իրեն ամոթահար ձևացնելով, խեղճ-խեղճ խոսեց Երվանդը, — տեսնո՞ւմ եք, պարապում ենք, էլի։

—Պարապո՞ւմ եք։—Սուսանը մոտեցավ Զավենին, որը շարունակում էր նստած մնալ բաց գրքի առաջ։ Նա կռացավ գրքի վրա և հաղթական բացականչեց.

—Ահա, տեսե՞ք, թե ինչպե՞ս են պարապում,—և նա Զավենի առջևից վերցնելով գիրքը, ցույց տվեց իր ընկերներին. «Երկրաչափություն 8, 9 և 10-րդ դասարանների համար»։—Սրանո՞վ էիր պարապում։

— Ըհը՛,— շփոթված գլխով արեց Վարդանը։

Այս անգամ էլ ջոկատի խորհրդի կողմից եկած պատգամավորները ծիծաղեցին։

—Դե, իհարկե, որպեսզի ձևացնեք, թե պարապում եք, հենց որ մեզ տեսաք, էս գիրքը վերցրիք դրիք ձեր առաջ. սա Վարդանի քրոջ դասագրքերից է։—Անմիջապես գլխի ընկավ Գոհարիկը, ապա շարունակեց։—Ջոկատը մեզ հանձնարարել է՞ իմանալ, թե ինչո՞վ եք անցկացնում ձեր ժամանակը։

Մտերիմները խորհրդավոր հայացքներ փոխանակեցին իրար հետ, որոնցով կարծես ուզում էին ասել. «Չըսխալվեք, հա՛, բերաններիցդ ոչ մի խոսք չթռցնեք»։

—Ինչո՞ւ էիր այսօր հավաքույթից փախել։

— Ամաչում էինք,—շշնջաց Երվանդը։

Մի խոսքով, տղաները բավականին երկար հանդիմանության ենթարկվեցին։ Երվանդը բոլորի կողմից խոստացավ, որ իրենք կուղղվեն, միայն թե մի փոքր ժամանակ տան։ Մեր հերոսները թեթևացած շունչ քաշեցին միայն այն ժամանակ, երբ անսպասելի հյուրերն իրենց պարտականու-



թյուններն ավարտված համարելով, գնացին։ Բայց հազիվ էր նրանց խելքը գլուխն եկել, երբ նորից դուռը թակեցին։ Ներս մտավ Գառնիկը։

—Ըմ... ըմ... գիտե՞ք,—թոթովեց նա,—ես մոռացել եմ, ես մի բան եմ մոռացել... ես...—ու լռեց։

—Ի՞նչ ես մոռացել,—անհամբերությամբ վրա բերեց Վարդանը։

—Ջոկատի խորհուրդը, ջոկատը... դե, հանձնարարել են... պետք է...

Ի՞նչ են հանձնարարել...

—Իմանալ... իմանալ, որ երբ մենք եկանք... դուք ինչ գործով էիք զբաղված։—Չափից դուրս ճիգ գործադրելուց նրա չաղլիկ թշերը մինչև անգամ կարմրեցին։

—Էլ ի՞նչ ես կպել, ջոկատ հա ջոկատ։ Ասա ինքդ ես ուզում իմանալ, էլի,—հեգնեց Երվանդը։

Գառնիկը շփոթված ինչ-որ անհասկանալի բաներ կմկմաց ու լռեց։

—Ի՞նչ է, դու խաբարբզա՞ն ես,—մյուս կողմից վրա բերեց Զավենը։

—Ե՞ս... ե՞ս...

—Բա ինչի՞ ես ուզում իմանալ, թե ի՞նչ էինք անում։

—Էնպես, հետաքրքիր է. ինչ է, վախենում եք Մարդու ասե՞մ, ոչ ոքի էլ բան չեմ ասի։

Տղաները հարցական միմյանց նայեցին։ Մի փոքր տատանվելուց հետո, Երվանդը Գառնիկին կարգադրեց.

—Գնա՛ դուրս, հաշվիր մինչև հարյուրը ու նորից արի։

Գառնիկը հետաքրքրությունից և խորհրդավորությունից այրվելով, դուրս գնաց։

Հենց որ Գառնիկը դուրս գնաց, Երվանդն իր ընկերներին հանդիսավորությամբ և շշնջալով հայտարարեց.

—Աջեր կղզում երևացել է մի նոր նավաբեկյալ, պետք է ստուգենք՝ ինչպիսի՞ մարդ է. կարելի՞ է նրան մեր շարքերն ընդունել, թե չէ։

Հինգերորդ գլուխ

## ԱՆՀԱՄԲԵՐ ՆԱՎԱՐԿՆԵՐԸ։ ՈՐՏԵՂ Է ԳՏՆՎՈՒՄ ԱՋԵՐ ԿՂԶԻՆ։ ԱՐԹՆԱՑՈՒՑԻՉ ԺԱՄԱՑՈՒՅՑ ԵՎ ԱՐԵՎԻ ԺԱՄԱՑՈՒՅՑ։

Գառնիկը դուռը թակեց։

—Դեռ ժամանակը չի,—ներսից ձայն տվեց Երվանդը։

—Ես հաշվեցի մինչև հարյուր տասը,—դուռը կիսաբաց անելով ասաց Գառնիկը։

—Նորից հաշվիր մինչև հարյուրը,—կարգադրեց Երվանդը։

Եվ իրոք, Գառնիկը մինչև հարյուր տասն էր հաշվել, բայց այդքան ժամանակամիջոցում Երվանդն իր ընկերներին դեռ չէր էլ հասցրել բացատրել, թե ինչ է նշանակում նավաբեկյալ։

—Դե, ես ընդհանրապես գրքերում եմ կարդացել, որ ովքեր անմարդաբնակ կղզի են ընկնում, կոչվում են նավաբեկյալ,—շարունակեց իր բացատրությունները Երվանդը։

—Բայց ինչո՞ւ են ասում նավաբեկյալ և ոչ թե, օրինակ՝ կղզաբեկյալ,—հարցրեց Զավենը։

—Դե երևի այն պատճառով, որ կղզի հասնելու համար հարկավոր է նավ նստել։

Այդ պահին Գառնիկը նորից դուռը թակեց։

—Ի՞նչ է,—ձայն տվեց Երվանդը։

Դուռը կիսաբաց անելով Գառնիկն ասաց.

—Հաշվեցի մինչև հարյուր քսանը։

—Գնա նորից հաշվիր,—դարձյալ կարգադրեց Երվանդը։

—Իմ քեռին, է՛, էն քեռին, որ գիտնական է,—պատմեց Վարդանը,—մի անգամ նավով Բաթումից գնաց Հեռավոր արևելք։ Բայց իմ քեռուն ոչ ոք նավաբեկյալ չէր ասում։

—Հետո ի՞նչ, նա հո կղզի չէր գնում։

—Հա, ճիշտ է, նա կղզի չէր գնում... բայց ո՞վ է իմանում, գուցե Հեռավոր արևելքը կղզի է։

—Եթե կղզի լիներ, չորս կողմը ջուր կլիներ,—նորից բացատրեց Երվանդը։

—Գուցե չորս կողմը ջուր է, դրա համար էլ նավով...—ասաց Վարդանը, բայց չկարողացավ խոսքը վերջացնել, որովհետև Գառնիկը նորից դուռը թակեց և, առանց պատասխանի սպասելու, դուռը կիսաբաց անելով, հայտարարեց.

—Ես հաշվեցի մինչև հարյուր երեսունը։

—Նորից հաշվիր,—մի անգամ էլ կարգադրեց Երվանդը։

Գառնիկը աղաչական—խղճալի հայացք գցեց տղաների վրա ու նորից ծածկեց դուռը։

—Բայց ինչո՞ւ համար է Գառնիկը նավաբեկյալ, նա հո դեռ կղզի չի՞ ընկել,—հարցրեց Զավենը։

—Դեռ չի ընկել, բայց կընկնի, եթե մենք որոշենք,—ասաց Երվանդը։

—Էդ չեղավ,—բողոքեց Զավենը,—մենք էսքան ժամանակ էդ գաղտնիքը միասին պահում ենք՝ ոչինչ, հիմա նա մի րոպեում նավաբեկյա՞լ դարձավ։

—Մենք էլ ենք նավաբեկյալ,—հանգստացրեց նրան Երվանդը։ Միայն թե ուրիշ անգամ, ես այդ մասին ձեզ դեռ ոչինչ չեմ ասել, կարծում էի, թե դուք գիտեք, որ...

Բայց այդ պահին դուռը բացվեց։ Գառնիկն էր։ Հայացքից երևում էր, որ խեղճ տղան արդեն բավականին հուսահատվել է։

—Մինչև հարյուր քառասունը հաշվեցի։ Թե չեք ասի՝ թողնեմ գնամ։

—Դե լավ,—ասաց Երվանդը։—Մի անգամ էլ գնա հաշվիր ու վերջ։

Գառնիկը նորից գնաց։

—Դե վերջացնենք,—ասաց Երվանդը։—Գառնիկին թողնե՞նք, թե չէ։ Կարո՞ղ ենք նրան հավատալ, ոչ ոքի չի՞ ասի։

—Չի ասի,—հավատացրին տղաները, որոնց համակրանքը Գառնիկն արդեն շահել էր՝ շնորհիվ դռան ետևում այդքան ժամանակ համբերությամբ սպասելու։

Այս անգամ Գառնիկն ավելի քիչ սպասեց։ Նա հենց էն է, արդեն հարյուրին պետք է հասներ, երբ Վարդանը դուռը բաց արեց և ասաց.

—Դե արի ներս։

Զավենը նրան ասաց.

—Դու էդ ի՛նչ անհամբեր նավաբեկյալ ես։

—Ի՞նչ...

—Նավաբեկյա՜լ։

Եվ ահա այստեղ Գառնիկը լսեց այն խորհրդավոր գաղտնիքը, որ երկար ժամանակ պահում էին երեք մտերիմները։ Դժվար է նկարագրել, թե այդ պատմությունն ինչպիսի տպավորություն թողեց Գառնիկի վրա։ Նա նախ նախանձեց, որ մի այդպիսի հերոսական ու զարմանալի գործ կատարել է ոչ թե ինքը, այլ իր նման մի տղա, Երվանդը, հետո հպարտացավ, որ նման մի գաղտնիք են վստահում իրեն։ Գառնիկը շատ ուրախացավ, որ ինքն էլ պետք է մասնակցի նշանավոր արշավախմբին։ Նրա ցնծությունը գագաթնակետին հասավ, երբ իմացավ, որ իսկի մեկ տարի էլ չանցած, Ազեր կղզում լինելու են Զավենի, Վարդանի, Գառնիկի անունով կոչվող լեռներ, գետեր, հետո էլ, ո՞վ իմանա, ժամանակին նաև քաղաքներ ու գյուղեր։

Երբ առաջին տպավորությունն անցավ, Գառնիկը հարցրեց.

—Իսկ որտե՞ղ է Ազեր կղզին։

—Կասպից ծովումն է, էլի, հո լսեցի՞ր,—ասաց Վարդանը,—երբ դու եկար, մենք հենց նոր քարտեզի վրա նայում էինք Կասպից ծովը։

Վարդանը գնաց նորից բերեց Կովկասի մեծ քարտեզը և փռեց գետնին։

Մատը կապույտ, մեծ մակերեսի շուրջը պտտեցնելով, Վարդանը բացատրեց.

—Սա Կասպից ծովն է. տեսնում ես, էստեղ գրված է՝ Կասպից ծով։—Հիմա Երվանդն ուզում է ճշտի, թե որտե՞ղ է կղզին։

Երեքը միասին լարված նայեցին Երվանդին, որը լուրջ, կենտրոնացած դեմքով խոնարհվել էր քարտեզի վրա։

—Լավ, դու կղզում եղել ես, բա իսկի չես հիշում, թե որտեղ էր,—հանդիմանելով ասաց Վարդանը։



նից հետո տղաները իրենց նոր ընկերոջը բացատրեցին, թե ինչպես են նախապատրաստվում արշավանքին։ Դառնիկին ցույց տվին անհրաժեշտ իրերի ցուցակը, պատմեցին, թե ինչ իրեր ունեն, ինչեր են հավաքել։

—Բա ժամացո՞ւյց, —հարցրեց Դառնիկը։—Բա ժամացույց հարկավոր չի՞։ Ես դպրոց գնալիս առավոտներն արթնանում եմ արթնացուցիչ ժամացույցի զանգով։

—Դե, — անփութորեն ձեռքը թափահարեց Զավենը,—էնտեղ դպրոց չկա, մեր ինչների՞ն է պետք արթնացուցիչ ժամացույցը։

—Համ էլ,—ասաց Երվանդը,—ես գրքերում կարդացել եմ, որ անմարդաբնակ կղզիների վրա արևի ժամացույց է լինում։ Մի բաց տարածության վրա ձող են տնկում և ստվերով որոշում են, թե ժամը քանիսն է։

—Ստվերով ինչպե՞ս կարող են որոշել...

—Դե, դա արդեն վարժվելու բան է, — ասաց Երվանդը։—Կամաց-կամաց կսովորենք։

—Մենք մի հատ արթնացուցիչ ժամացույց ունեինք, փչացել է, էլ չի աշխատում, — ափսոսանքով խոսեց Դառնիկը։—Ասացի պետք կգա՝ բերեմ, բայց քանի որ...

—Ոչինչ, բեր,—հանգստացրեց նրան Երվանդը,—ի՞նչ կա որ, քանի որ կա, բեր, թող մեր անմարդաբնակ կղզում էլ արթնացուցիչ ժամացույց լինի։

—Լավ չեմ հիշում, բայց երևի հենց ծովի մեջտեղում լինի,—վերջապես հայտարարեց նա։—Երբ գնանք, այս քարտեզը կվերցնենք հետներս և սրա վրա կնշանակենք մեր կղզու տեղը։

Բոլորն էլ համաձայնվեցին այդ մտքի հետ։ Դրա

(Շարունակելի)




Ե. ՉԱՐԵՆՑ

# Իմ ընկեր Լիպոն

**(Բալլադ մանկության, բախտախաղի, պայքարի և հերոսության մասին)**
**Ընկեր Լիպարիտ Մխչյանի հիշատակին**

Մանկությունը հիշելիս՝ սիրտս դառնում է գինով...
Ես մի ընկեր ունեի՝ Լիպո անունով:

Ինչքան հիշում եմ նրան՝ աչքերիս հանդեպ
Մի Նաիրյան տեսարան բացվում է հայաճեպ:

Փռվում է դեմս խոկուն մի փողոց խաղաղ,
Ու փողոցի անկյունում-մի փոքր տղա:

Նիրհում է Ղարսը՝ խաղաղ ամառնամուտին...
Ինչքա՛ն փոքր է տղան այդ ոտաբոբիկ:

Նա նստած է մի քարի-տասնամյա տղան,
Ու նիրհում է առաջին-մի ցածլիկ սեղան:

Կլոր սեղան է ցածլիկ, մեջտեղում-մի չարխ.
Բախտախաղ է մանկական-կոպեկնոց վիճակ:

Տո՛ւր մի կոպեկ ու խփի՛ր.—թե բախտդ բանեց—
Մի տուփ լուցկի, կամ մի տուփ քորոց կհանես:

Կապուտաչյա այդ տղան, ա՜խ, ինչքա՜ն էր չար.
Մեզ հետ կռվում էր հաճախ, ծեծվում չարաչար:

Բախտը ժպտար եթե մեզ ու լուցկի հաներ—
Նա իր չարխը կծռեր ու կռիվ կաներ:

Ուներ բարի նա մի մայր՝ ծեր ու չքավոր.
Միակ նեցուկն էր նա տան՝ բոլորին պահող:

Ինչքան հիշում եմ հիմա մանկությունս ես—
Կապուտաչյա այդ տղան ելնում է իմ դեմ:

Տեսնում եմ միշտ նրան ես իր չարխի առջև...
Հետո օրեր անցան շատ, սլացան հապճեպ:

Ու կորցրի ես նրան:—Աշխարհում այնինչ
Եկան օրեր հուրհրան, տարիներ անչինչ:

Պատերազմներ եղան մեծ, պայքարներ բազում—
Եվ ամբողջ կյանքը փոխվեց, ինչպես երազում:

Դասակարգեր ընկան հին ու ելան նորեր—
Օրեր վառվառ ու անգին, անմոռա՛ց օրեր...

Մի օր ելանք ու առանք Երևանը մեր—
Հետո դաշնակը շարժեց մաուզեր ու զենք:

Նահանջեցինք քաղաքից մենք լուսաբացին—
Եվ ընկերոջս նորի՛ց ես հանդիպեցի.—

Երկու ամիս էր արդեն ճակատում էինք—
Վերջին օրերը միայն մենք հանդիպեցինք:

Լիպարիտ էր դարձել նա, իմ ընկեր Լիպոն,
Արշավում էր բանակում՝ ռազմի շայիկով։

Նա զինկոմն էր մեր գնդի, մեր գնդի հոգին.
Անճանաչ էր համարյա՝ գորշ շինելն հագին։

Ճանաչեցի սակայն ես։ Մոտեցա նրան,
Ասի՝ հիշո՞ւմ ես, Լիպո՛, Ղարսը Նախրյան...

—Հիշու՞մ ես չարխը քո էն...—Նա ժպտաց ու խիստ
Ասաց.—Գնում ենք էգուց. պատրաստվի՛ր, եղի՛շ։

—Դե, էն չարխը...նա չկա՛...չկա...Հիմա մենք
Ուրի՛շ չարխեր պիտի այս աշխարհում շարժենք։

—Բախտախաղ չէ սակայն սա, այլ կռիվ ու կամք.
Լուսաբացին մենք պիտի առաջանանք...

—Դաշնակը խաղ է կարծում, հանաք է անում...
Դե, կխոսենք մի լավ—Երևանում...

. . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . . .

...Լուսաբացին մենք անցանք գրոհի,—
Լուսաբացին խփեցին Լիպոյին...

Լուսաբացին նա ընկավ կռվում,
Երբ հաղթանակն էր վառվում, փռվում։

Ընկավ կռվում
Մեր զինկոմն արի.

Ընկավ Լիպոն
Երևանի
Ճանապարհին...

...Լուսաբացին Երևանը երևաց.
Լուսաբացին մենք մտանք Երևան։

Լուսաբացին մեր բանակը հաղթական
Քաղաք մտավ՝ հետը կարմիր մի դագաղ...

Լուսաբացին ո՛չ մի «ախ»—

Սակայն—

Լուսաբացին դրոշներ հուրհրան
Իջան ընկեր Լիպարիտի
Վրա...

Խոնարհվեցին դրոշները բանակի—
Ու պառկած էր իմ ընկեր Լիպոն՝
Ռազմի կարմիր իր զգեստներն հագին։

—Փա՛ռք քեզ, փա՛ռք քեզ,



Նկ. Մ. ՍՈՍՈՅԱՆԻ



Մեր զինկոմ
Արի.—
Փառք, որ ընկար
Հաղթանակի
Ճանապարհին...
. . . . . . . . . . . . . . . . . . .

Հիմա Լիպոն իմ չկա,
Նա չկա հիմա,—
Ո՞վ չի սակայն երազում
այդպիսի մի մահ...

Նա պառկած է
Կոմունարների
Այգում.
—Փա՜ռք քեզ, ընկած
Մեր քաջարի
Զինկոմ...

Դու պայքարի
Դրոշ եղար
Վառ մի.
—Թե տեսնեի՜ր ի՜նչ է դարձել
Մեր Բանակը
Կարմի՛ր:

Նա աշխարհում բանակն է,
օ, առաջին:
Եվ ոչ մի ուժ չի դիմանա
առաջին:
Ննջի՛ր խաղաղ
Կոմունարների
Այգում.
—Փա՜ռք քեզ, ընկած
Մեր քաջարի
Զինկոմ...

# ԲԱԼԼԱԴ ԳՆԴԱՊԵՏ ՏՈՄՍՈՆԻ, ԿՈՄԵՐԻՏ ՏՂԻ ԵՎ ԳՈՐԾԱԴՈՒԼԻ ՄԱՍԻՆ

Նկ. Գ. ԽԱՆԱՂՅԱՆԻ



Քաղա՛ք իմ, քաղա՛ք իմ, քաղա՛ք իմ—Բաքու,—
Որքա՜ն հեքիաթնե՛ր կան այս գորշ քաղաքում...

Ես ունեմ ընկեր մի, ընկեր մի մոտիկ,
Նա մեջքին կապում է մի բարակ գոտի,
Նա գլխին դնում է հասարակ կեպի—
Իսկական մի հերոս է չգրված վեպի,
Հասարակ բանվոր է նա Բալախանում—
Փորում է նա հողը ու նավթ է հանում:

Քաղա՛ք իմ, քաղա՛ք իմ, քաղա՛ք իմ—Բաքո՛ւ,—
Որքա՜ն հեքիաթներ կան այս գորշ քաղաքում...

Այս վտիտ բանվորը, այս վտիտ տղան
Այն տարին եղել է համարյա խոխա:—
Այդ այն մութ տարին էր, երբ ծովի բացից
Գրավեց քաղաքը մեր— անգլիացին:

Երբ եկավ, նստեց նա ու հպեց պատին
Մեր ըմբոստ քաղաքն ու պրոլետարիատին:
Տոմսոնի կոշիկն էր քաղաքում տիրում.—
Թշնամին դաժան էր, բարեկամն—հեռու...
Բայց ե՞րբ է բանվորը լռել աշխարհում,—
Նա խուլ պայքարու՜մ էր, անդո՛ւլ պայքարում:

Քաղա՛ք իմ, քաղա՛ք իմ, քաղա՛ք իմ—Բաքու,—
Որքա՜ն հեքիաթնե՛ր կան այս գորշ քաղաքում...

Այդ մութ օրերին էր, երբ մի օր բերին
Լցրեցին բանտերը մեր ընկերներին:
Եվ վաղ առավոտը, հանկարծ, դեմուդեմ—
Մեր փոխ տղին այս կանչեց Կոմիտեն:
Գաղտնի կոմիտեն մեր կանչեց ու ասաց.
«—Դու քաջ կոմերիտ ես՝ հասակդ առած,
Քո հայրը բանվոր է, ինքդ—պրոլետար.
Տեսնո՞ւմ ես թղթերը.—վերցրո՛ւ ու տա՛ր:
Մերոնք գործադուլ են պատրաստում արդեն,
Այս խոզ գնդապետը ելել է մեր դեմ—
Ուզում է ողջի՛ն նա դարձնի գերի.
Կտանես այս թղթերը ՚նրա զորքերին,
Կմտնես փողոցները խռիվ ու բանուկ—
Իբրև թե աֆիշ ես հանգիստ բաժանում»:—

Քաղա՛ք իմ, քաղա՛ք իմ, քաղա՛ք իմ—Բաքու,—
Որքա՞ն հեքիաթնե՞ր կան այս գորշ քաղաքում...

Հրճվանքից շողաց մեր քաջ տղի հոգին,
Կարծես թե նա տերը դարձավ քաղաքի.
Աչքերում ցոլաց մի խնդություն անհուն.—
Տեսեք՝ ինչ՛ գործե՞ր են նրան վստահում...
Ճերմակ թերթիկները գրպանը խոթեց.—
Իսկի չվախի՝ թող գաղտնի Կոմիտեն:
Ու վազե՛ց, վազե՛ց նա սրտի դողոցով.
Դիմացից՝ մի վա՛շտ էր անցնում փողոցով.—
Զապելով սրտում իր մի կծող, մութ բան—
Մոտեցավ նրանց նա ու ասաց «Գուդբայ»...
Ասաց, ծիծաղեց նա կամաց, ինքնիրեն—
Ու հանեց թերթիկները, սկսեց ցրել...

Քաղա՛ք իմ, քաղա՛ք իմ, քաղա՛ք իմ—Բաքու,—
Որքան հեքիաթնե՞ր կան այս գորշ քաղաքում...

Այս ի՞նչ քաջ տղա է, այս ի՞նչ լավ ցրիչ...
Բոլոր զինվորները մեկ-մեկ վերցրին.
Սակայն հայհոյանքը կոկորդում զսպած՝
Մեր տղի գլուխը արնոտեց սպան:
Հարվածեց, գլուխը արնոտեց տղի—
Կարմիր կաթիլները թափվեցին հողին...
Բայց երկրորդ հարվածը երբ օդում շողաց—
Արդեն չքացել էր, կորել էր տղան...

Քաղա՛ք իմ, քաղա՛ք իմ, քաղա՛ք իմ—Բաքու,—
Որքան հեքիաթնե՛ր կան այս գորշ քաղաքում;..

Հենց հասավ մեր Կոմիտեն տղան,
Արնոտած երեսը հրճվանքից շողաց.
Կապեցին գլուխը, դրին անկողին.
Ուղարկող ընկերը համբուրեց տղին...
Հետո գործադուլ մեծ եղավ քաղաքում—
Ելան բանվորները ու հաղթեց Բաքուն:
Ամբողջ պրոլետարը կանգնեց դեմուդեմ—
Խաղուկ Տոմանի՛ն այն հաղթեց Կոմիտեն...

Հաղթեց գործադուլը ինգլիշ-զորքերին
Բաքվի պրոլետարը չդարձավ գերի.

Սարսեց գնդապետը մեր ուժից անթիվ—
Եվ ելա՛ն ընկերները Բայիլի բանտից...

Քաղա՛ք իմ, քաղա՛ք իմ, քաղա՛ք իմ—Բաքու,—
Որքան հեքիաթնե՞ր կան այս գորշ քաղաքում...

Կեցցե՛ գործադուլը, կեցցե՛ Կոմիտեն,
Կեցցե՛ և փոքրիկ այն, կոմերիտ տղեն,



Կեցցե՛ մեր պայքարը ու կամքը արի—
Կեցցե՛ բանվորները համայն աշխարհի...

Քաղա՛ք իմ, քաղա՛ք իմ, քաղա՛ք իմ—Բաքու,—
Որքան հեքիաթնե՞ր կան այս գորշ քաղաքում...



# Ղուկաս Ղուկասյան

Հ. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

Նկ. Ա. ՋԱՔԱՐՅԱՆԻ

Երևանի Պետական համալսարանի դիմաց կանաչին է տալիս բոցաշունչ ռևոլյուցիոներ Ղուկաս Ղուկասյանի անվան պուրակը։ Ահա նա, հրացանն ուսին, գրանիտի տեսք առած, կանգնած է պուրակի կենտրոնում, իսկ նրա թիկունքում, ծառերի միջից երևում է Երևանի աստղադիտարանի գմբեթը։

Դուք, երեխաներ, ճանաչում եք Ղուկաս Ղուկասյանին, բայց երևի չգիտեք, որ աստղադիտարանը բոլորովին էլ պատահական չէ այնտեղ։

Ահա, կարդացեք այս երկու փոքրիկ էպիզոդը նրա մանկությունից և ամեն ինչ կհասկանաք։

Ղուկասը շատ էր սիրում գրքեր կարդալ։ Նա ամեն օր գնում էր քաղաքի գրավաճառների մոտ։ Հայրը սկզբում սիրով էր վճարում գրքերի գինը, բայց հետո, երբ Ղուկասն ավելի հաճախ սկսեց գրքերի համար փող խնդրել, նա դժվարացավ։ Դե նա այդքան ոչ փող ուներ, ոչ՝ հնարավորություն։

Մի անգամ Ղուկասը իմացավ, որ գրավաճառ Արտաշի մոտ աստղագետ Ֆլամարիոնի «Մթնոլորտը» գրքից մի օրինակ կա։ Թանկ էր։ Հորը վշտացնելու կարիք չկար։ Բայց գիրքը չգնել չէր լինի, մանավանդ, որ գրադարաններում անհնար էր այդ գիրքը ձեռք բերել։ Ի՞նչ անել։ Գրավաճառ Արտաշին Ղուկասը լավ էր ճանաչում, հաճախ էր նրանից գիրք գնել։ Այդ ծանոթությունից սրտապնդված, նա գնաց գրավաճառի մոտ.

—Արտաշ ապեր, Ֆլամարիոնի գիրքը ինձ պետք է, կտա՞ս։

—Հա, Ղուկաս ջան, տամ, փողով բան չի՞։

—Փող չունեմ, Արտաշ ապեր։

Գրավաճառը զարմացավ։

—Բա որ փող չունես, ո՞նց քեզ գիրք տամ։

—Մի զարմանա, Արտաշ ապեր, ես քեզ համար գործ կանեմ, տեղը դուրս կգա։

—Ի՞նչ գործ, ա՛յ տղա, փող ունես՝ առ, չունես՝ էլ գրքի մասին չխոսենք,— ուզեց կարճ կտրել գրավաճառը։

Ղուկասը համառեց։

—Ասեմ ինչ գործ, Արտաշ ապեր, մի նեղանա։ Դու ամեն օր գրքերը մինչև այստեղ շալակով ես բերում, չէ՞։

—Ասենք թե՝ հա։

—Շալակով էլ տանում ես, չէ՞։

—Է, հետո ի՞նչ։

—Ես քեզ կօգնեմ։ Կուզես տաս օր, լավ, կուզես՝ տասնհինգ։

Գրավաճառը չհամաձայնվեց։



Ղուկասը մեկ ուզեց թողնել հեռանալ, բայց սիրտը գրքից չէր կտրվում։

Երկար սակարկելուց հետո գործը գլուխ եկավ։ Ղուկասը մի ամբողջ ամիս գրավաճառ Արտաշի հետ միասին բերեց ու տարավ նրա գրքերը։

Ամսի վերջին Ղուկասի «բեռը» թեթևացավ։ Նա տուն էր գնում ձեռքին միայն մի գիրք։ Դա Փլամարիոնի «Մթնոլորտը» գիրքն էր։



* * *

Հինգերորդ դասարանում սովորելիս, Ղուկասը մի օր երեկոյան իրենց դասարանցիներին հրավիրեց տուն։ Բոլորի զարմանքը մեծ եղավ, երբ Ղուկասը, հակառակ ընդունված կարգի, տանից դուրս եկավ։ Նա գնաց դեպի երդիկը և խնդրեց, որ մյուսներն էլ հետևեն իրեն։

Երդիկի մեջտեղում, հենակների վրա ամրացված էր դեպի երկինք ուղղված կես մետրանոց մի խողովակ՝ ծայրերին հաստ ապակի։ Դա Ղուկասի պատրաստած աստղադիտակն էր։

— Տղաներ, ես ձեզ ուզում եմ ծանոթացնել այս գործիքի հետ, որի միջոցով մենք հիմա պետք է դիտենք երկինքը, նայենք աստղերին, — ասաց Ղուկասը։ Նա մոտեցավ դիտակին և ճշտեց փողի ուղղությունը։ Ապա նա տղաներից մեկին խնդրեց, որ մոտենա, նայի։ Հետո դիտակին մոտեցան մյուսները։ Հերթով բոլորը նայեցին։ Խորհրդավոր փողի միջոցով նրանք համեմատաբար ավելի պարզ ու խոշոր էին տեսնում աստղերը։ Հետաքրքիր էր, զարմանալի։

Հանկարծ տղաներից մեկն ասաց.

Տեսնո՞ւմ եք, որ ոչ մի աստված էլ չի երևում։

—Ճիշտ որ, ավելացրեց մի ուրիշը,—ապա եկեք մեկ էլ նայենք։

Սկսեցին նորից նայել։ Բան դուրս չեկավ։ Փայլփլող աստղերից ու անհուն խավարից բացի, նրանք ուրիշ ոչինչ չնշմարեցին։

Ընկերներից մեկը՝ Հակոբը, որ կրոնի դասերին միշտ աշխատում էր աչքի ընկնել, ասաց.

—Իսկ երեկ, դասի ժամանակ, պարոն Սարգիսն ասում էր, թե Քրիստոսը բարձրացել է երկինք։ Ինչքա՞ն վերև պետք է բարձրացած լինի, որ հեռադիտակով անգամ չերևա։

Տղաները շատ վիճեցին, զանազան կարծիքներ հայտնեցին։ Եղան այնպիսիները, որ առանց քաշվելու ասում էին, թե իրենք չեն հավատում աստծո գոյության մասին պարոն Սարգիսի քարոզներին։ Մյուսները չհամարձակվեցին այդպիսի կարծիք հայտնել։ «Ղուկասի աստղադիտակը ձեռքի գործ է,— ասում էին նրանք,— դժվար է նրանով աստծու մասին կարծիք կազմել։ Ա՛յ, ուրիշ բան, եթե իսկական աստղադիտակ լիներ»։

Ղուկասը լսում էր տղաներին, ուզում էր հայտնել նաև իր կարծիքը, բայց երկմտանքի մեջ էր. կհավատա՞ն արդյոք իրեն։

—Հեռադիտակը մեղք չունի,— վերջապես ասաց նա,—իմ կարդացած գրքերում գրված է, որ երկնքում արևից, լուսնից, մոլորակներից ու, առհասարակ, աստղերից բացի, ուրիշ ոչինչ էլ չկա։

## ՈՂՋՈՒՅՆ ԴՊՐՈՑԻՆ

*Նորից ենք դառնում*
*Գիրկդ մայրական,*
*Մեր սիրտն է ցնծում*
*Խինդից անսահման։*

*— Ողջո՛ւյն, հարազատ,*
*Մեր դպրոց անգին,*
*Սպասում ենք քո*
*Առաջին զանգին։*

ԼՅՈՒԴՎԻԳ ԿԱՐԱՊԵՏՅԱՆ
Արթիկի շրջան, գյուղ Հնաբերդ




Ս. ԼՎՈՎՍԿԻ

### ՀԱՂՈՐԴԱՎԱՐ

Ճիշտ են անում, որ լուրջ գործեր
Չեն վստահում Միշային դեռ.
Նա ձեզ համար կբերեր տուն
Մեկուկես հարկ և անկտուր։
Ձեր հեծանիվին թե ձեռք տար նա,
Ոչ մի անիվ էլ չէր մնա,
Դուք ստիպված կլինեիք
Համ-համ ուտել ճաշ ու ընթրիք։
Ֆիլմում լրիվ չէիք տեսնի
Արկածները Նասրեդդինի,
Երկրների մասին անհայտ
Չէր իմանա և ոչ մի մարդ,
Եթե Կուկի, Մագելլանի
Հույսը լիներ Միշան հայտնի։
Պատճառն ի՞նչ է. չես հասկանում.
Մի գործ կիսատ-պռատ անում,
Անցնում է շուտ ուրիշ գործի,
Ամեն ինչ է ուզում փորձի...

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Ինչքան լավ է, որ լուրջ գործեր
Չեն վստահում Միշային դեռ։

Իսկ եթե ուզում եք Միշայի հետ ավելի մոտիկից ծանոթանալ, այդ դեպքում լսեցեք մեր պատմությունը, որ կոչվում է «Անգլուխ ձիավորը»։

*Մեջքները հանդիսականների կողմն արած՝ պատուհանի մոտ կանգնած են ՄԻՇԱՆ և ԼՅԱԼՅԱՆ։ Հետապնդման երաժշտություն։*

ՄԻՇԱ.— (ցնծությամբ) Լյա՛լկա, տեսնո՞ւմ ես այս ձիավորին:
ԼՅԱԼՅԱ.— (փսփսալով): Տեսնում եմ:
ՄԻՇԱ.— (առավել ցնծությամբ): Նկատո՞ւմ ես, թե ինչն է պակաս:
ԼՅԱԼՅԱ.— (սարսափով): Նկատում եմ:
ՄԻՇԱ.— (ցնծության ծայրահեղ աստիճան): Իսկ չե՞ս կարող ասել, թե ինչը:
ԼՅԱԼՅԱ.— (սառելով): Գլուխը:



*Երաժշտությունն ընդհատվում է։*

ՄԻՇԱ.— (անփութորեն)։ Ճիշտ է։ Անգլուխ ձիավոր է Ա՛յ, հիմա գլուխը մենք տեղը կդնենք։

*Միշան և Լյալյան շրջվում են հանդիսականների կողմը։ Պատուհանի գոգին երևում է գլխատված ձիավորի արձանիկը։*

ՄԻՇԱ.— Գտա գլուխը։ Ահա։

ԼՅԱԼՅԱ.— Ա՜, ճիշտ է։ Դա է որ կա։

ՄԻՇԱ.— Բանից դուրս եկավ, որ մահճակալի տակն էր գլորվել։

ԼՅԱԼՅԱ.— Բայց ինչպե՞ս։

ՄԻՇԱ.— Շատ պարզ։ Այս ձիավորով ես մեխեր էի խփում, երբ հատակմաքրիչն էի նորոգում, որը ջարդեցի, երբ փորձեցի բարձրացնել դաշնամուրը, որը...

ԼՅԱԼՅԱ.— Հիշում եմ, հիշում։ Բայց հիմա ինչպե՞ս ես գլուխը կպցնելու։

ՄԻՇԱ.— Շատ պարզ, սոսնձով։ (Մոտենում է ապակե ջրամանին և հանգիստ գցում հատակին)։

ԼՅԱԼՅԱ.— (վախեցած)։ Այդ ի՞նչ արիր։

ՄԻՇԱ.— (հանգիստ)։ Ջարդեցի ջրամանը։

ԼՅԱԼՅԱ.— Ինչո՞ւ։

ՄԻՇԱ.— Որպեսզի սոսնձով կպցնեմ։ Հասկանո՞ւմ ես, ամեն բան միանգամից։ Հա՛, ջարդիր խնդրեմ, այ, այն վազան։

ԼՅԱԼՅԱ — Ո՛չ մի գնով։

ՄԻՇԱ. Որ այդպես է, ինքս կջարդեմ։

ԼՅԱԼՅԱ.— Ո՛չ, ո՛չ։ Ավելի լավ է՝ ես ջարդեմ։ Դու արջի նման ես ամանեղենը կոտրատում, իսկ ես՝ կամացուկ, զգուշորեն... (Ջարդում է վազան) Ա՛յ, այսպես... Իսկ ինչո՞վ ես այս բոլորը կպցնելու։ Գումիարաբիկո՞վ։ Բայց չէ՞ որ ձիավորը պատրաստված է մետաղից, ջրամանը՝ ապակուց, իսկ վազան՝ հախճապակուց։

ՄԻՇԱ.— Գումիարաբիկն ինչացո՞ւ է։ Ա՛յ, սա տեսե՞լ ես։

ԼՅԱԼՅԱ.— Դա ի՞նչ է։

ՄԻՇԱ.— Ունիվերսալ սոսինձ։ Երկու աման ինքս եմ պատրաստել։ (Գործունյա եղանակով)։ Թերևս այս գավաթն էլ ջարդեմ, ճենապակուց է, սոսինձը պետք է սրա վրա էլ փորձեմ։ (Ջարդում է գավաթը)

ԼՅԱԼՅԱ.— Է՜, ո՞վ է այդպես աման ջարդում։ Ամանեղենը պետք է ջարդել խնամքով, զգուշորեն... (Ջարդում է բաժակը)։

ՄԻՇԱ.— Ի միջի այլոց, բաժակը բոլորովին անտեղի ջարդեցիր, ապակի արդեն ունենք։

ԼՅԱԼՅԱ.— (շագճապով)։ Լսիր, Միշա, իսկ մենք իսկապե՞ս այս բոլորը կկպցնենք։

ՄԻՇԱ.— Ձեռա՜ց։

ԼՅԱԼՅԱ.— Իսկ ինչպե՞ս ես սովորել սոսինձ պատրաստել։

ՄԻՇԱ.— Հիմա ես ամեն ինչ էլ կարող եմ անել՝ նորոգել, զոդել, պատրաստել հակաառնետային թույն, մեքենայի յուղ, կարող եմ հանել բամբակե և բրդե կտորեղենի վրա եղած բծերը, նույնիսկ վարունգ թթու դնել։ Ա՛յ, համաձայն այս գրքի, որ կոչվում է «Սկսնակ պը-



բակտիկի ձեռնարկ»: 1912 թվականին է տպագրվել: Այստեղ ամեն ինչի մասին էլ կա: Սա բիբլիոգրաֆիական հազվագյուտ բան է: Մառանում գտա: (Անսպասելիորեն): Ուզում ես դեմքիդ պեպենները հանեմ: Ձեռա՜ց.

ԼՅԱԼՅԱ.— Սպասի՛ր: Ի՞նչ ասել է բիբլիոգրաֆիական հազվագյուտ բան:

ՄԻՇԱ.— Դա... դե, ինչպե՞ս ասեմ քեզ... Մի խոսքով, այնպիսի հրատարակություն է, որ կարելի է տեսնել միայն մանկական գրքի շաբաթում: Հասկանո՞ւմ ես:

ԼՅԱԼՅԱ.— Հասկանում եմ:

ՄԻՇԱ.— Դե, եկ դեմքիդ պեպենները հանեմ:

ԼՅԱԼՅԱ.— Սպասիր: Ամենից առաջ պետք է այս բոլորը կպցնել:

ՄԻՇԱ.— Ճիշտ է: Քիչ մնաց՝ մոռանայի: Պեպեններդ ինձանից չեն փախչի, իսկ հայրիկը ամեն րոպե կարող է աշխատանքից վերադառնալ և այն ժամանակ...

ԼՅԱԼՅԱ.— Իսկ դու հավատացա՞ծ ես, որ մեր արածից մի բան դուրս կգա:

ՄԻՇԱ.— Ա՜յդ էր պակաս, որ դուրս չգա: Ձեռա՜ց: «Սկսնակ պրակտիկի ձեռնարկի» նախաբանում գրված է, որ խմբագրությունը տասնյակ շնորհակալություններ է ստացել: Մենք էլ կըստանանք: Այն էլ ոչ թե տասը, այլ հարյուր... Ոչ, հազար շնորհակալություն: (Սկսում է սոսնձել ամանեղենը):

Կսոսնձեմ, բերեք այստեղ՝
Ե՛վ ապակի, և՛ թե թիթեղ.
Երկու աման ես լիուլի
Սոսինձ ունեմ հրաշալի։
Ամեն տեղից, ամեն տեղից,
Ամեն տեղից բոլորը ինձ
Այսօրվանից պիտի բերեն
Ջարդուփշուր ամանեղեն,
Կբերեն ինձ խաղագնդակ.
«Նորոգեցեք, խնդրեմ, արագ»:
«Ալյումինե տաշտն այս նույնպես
Կարկատեցեք, խնդրում եմ ձեզ»:
«Ահա մի զույգ կրկնակոշիկ.
Շուտ նորոգեք, վարպետ փոքրիկ»։
Իսկ ես նրանց այսպես կասեմ.
«Կարելի է... դա էլ կանեմ»:
Մեկ էլ տեսար՝ եկան մեր տուն
Դասարանը և դասատուն,
Ուսուցչուհին էլ անպատճառ
Կարտասանի այսպիսի ճառ.
«Իզուր էի «երկու» և «մեկ»
Նշանակում նրան, գիտե՞ք,
Եվ կանոններ էի հարցնում,
Որ նա երբեք չէր հասկանում,
Ինչի՞ն են պետք հոլովումներ,
Ինչի՞ն են պետք խոնարհումներ,
Ինչո՞ւ սերտի նա անպայման
Աղյուսակը բազմապատկման:
Ամբողջ օրը պետք է նստի,
Կամ նորոգի, կամ կարկատի...
Միայն այնժամ թող գա դպրոց,
Երբ լինում է դասամիջոց»:

*Միշայի ջանքերն հաջողությամբ չեն պսակվում.*

ԼՅԱԼՅԱ.— Հը՞:

ՄԻՇԱ.— Ի՞նչ «հը՞»:

ԼՅԱԼՅԱ.— Չի կպչում...

ՄԻՇԱ.— Տեսնում եմ, որ չի կպչում:

ԼՅԱԼՅԱ.— Զարմանալի է...

ՄԻՇԱ.— Ի՞նչ կա այստեղ զարմանալու. եթե կպչեր, այն ժամանակ զարմանալի կլիներ:
(Կատվի մեղմ մլավոց):
Ի՞նչ մլավոց է:

ԼՅԱԼՅԱ.— Բարսիկն է: Ի՞նչ գործ ունի սեղանի տակ:

ՄԻՇԱ.— Փը՛շ-փը՛շ-փը՛շ... Սա ոչ թե սոսինձ է, այլ թյուրիմացություն: Այդպես էլ գիտեի: Ավելի լավ կլիներ՝ պեպեններդ հանեինք, և գործը դրանով վերջանար: Էլ հարկ չէր լինի ամանեղենը ջարդելու: Կամ թե գիտե՞ս ինչ, եկ մեքենայի յուղ պատրաստենք: Սա արդեն իսկական գործ կլինի: Հարյուր շնորհակալություն:

*Կատվի մլավոցն ավելի բարձր է լսվում.*

ԼՅԱԼՅԱ.— Բա՛րսիկ, Բա՛րսիկ: Փը՛շ-փը՛շ-փը՛շ: Ի՞նչ է մլավոցը գցել:

ՄԻՇԱ.— Գիտե՞ս ինչ, Լյալկա, ես նույնիսկ ուրախ եմ, որ սոսնձից բան դուրս չեկավ. Իսկապես: Հայրիկը կգա, կտեսնի ջարդված ամանեղենը ու, հենց որ ուզենա բարկանալ, մենք կասենք. «Համեցեք, մեքենայի յուղ չէի՞ք կամենա: Առաջին տեսակի է: Համեցե՛ք»: Հազա՛ր



շնորհակալություն։ Ա՜յ թե կուրախանա...

ԼՅԱԼՅԱ. — Իսկ նրա ինչի՞ն է պետք մեքենայի յուղը։

ՄԻՇԱ. — Ինչպե՞ս թե ինչին է պետք։ Անիվներ կյուղի։

ԼՅԱԼՅԱ. — Իսկ անիվ որտեղի՞ց ճարի։

ՄԻՇԱ. — Է՜, մի տեղից կճարի, էլի։ Ի՞նչ մի հազվագյուտ բան է որ... Ի՞նչ է, Մոսկվայում անիվ չկա՞։ Հետո էլ՝ պարտադիր չէ, որ սեփական անիվներ յուղի. կարող է յուղել ուրիշների ունեցած անիվները։ Մի խոսքով, դա իր գործն է, թե որտեղից անիվներ ճարի։ Թող ճարի՝ որտեղից սիրտը կուզի։

*Կատվի սրտաճմլիկ մլավոց։*

ԼՅԱԼՅԱ. — (ճչում է)։ Մի՜շա, բանից դուրս է գալիս որ Բարսիկը սոսնձոտվել, կպել է աթոռի ոտքին։

ՄԻՇԱ. — Ուռա՜։

ԼՅԱԼՅԱ. — Ես էլ... ես էլ չեմ կարողանում աթոռի վրայից վեր կենալ...

ՄԻՇԱ. — Ուռա՜։ Այդպես էլ գիտեի։ Ուրեմն՝ սոսինձը գլուխ եկավ։ Զարմանալի է։ Միլիո՜ն շնորհակալություն։ Մի րոպե։ Որտե՞ղ է իմ «Պրակտիկի ձեռնարկը»։ Ահա։ Հիմա ձեզ կազատեմ, ձեռա՜ց։ Ձեզ հանգիստ պահեք։

ԼՅԱԼՅԱ. — Ես պահում եմ...

ՄԻՇԱ. — (գիրքը բերելով)։ Այսպես... այսպես... «Սոսինձ ունիվերսալ «ս» տառով»։

*Կատվի աղեկտուր մլավոց, թերթվող էջերի խշխշոց։*

Ձեզ հանգիստ պահեք... Խուճապի չմատնվեք։ Հիմա, հիմա... Ահա, «Սոսինձ ունիվերսալ»։ Ամեն ինչ պարզ է։ Որպեսզի դուք սոսնձից ազատվեք, պետք է ձեզ թաթախել եռման ջրի մեջ կամ բռնել տաք գոլորշու վրա։

*Բարսիկը կատաղում է։*

Սոսնձելը ի՞նչ բան է որ...
Դա ամեն մարդ էլ կանի։
Սոսինձ հանելն է կարևոր,
Երբ կպչում է մի բանի։
Գտել եմ ես միջոց մի պարզ,
Այսօրվանից շատ չանցած՝
Ինձ կփնտրի ամեն մի մարդ
Որ գործ անեմ ես ձեռաց։



«Ա՜խ, փրկեցե՜ք դուք մեր որդուն,
Մեղրամանին է կպել,
Ջուր է ամեն բժշկություն,
Դո՜ւք կարող եք մեզ օգնել»
Աշակերտներն են խնդրելու.
«Ա՜խ, օգնեցե՛ք, շո՛ւտ եկեք,
Այս ծրարից Տաիրի կզզու
Դրոշմանիշը պո՜կեք»։
«Ա՜խ, ձեռքից է արդեն գնում
Աշխատանքը գիտական։
Ինքնաթիռով մեկնենք իսկույն
Ակադեմիա գիտության»։
Ի՞նչ ռեպորտաժ գործիս մասին,
Ի՞նչ կինոֆիլմ, հաղորդում...
Ինչպես է մեր ուսուցչուհին
Ժողկրթբաժնին պաղատում.
«Ա՜խ, շուտ արեք, թող գա Միշան
Եվ հենց այսօր, դպրոցում,
Կազմի համար ուսուցչական
Կարդա մի լավ զեկուցում:
Մանկավարժին նա, միայն նա
Սոսնձագետ կդարձնի...»։
Իսկ ես կասեմ. «Աչքիս վրա,
Թող ձեր ասածը լինի»:

ԼՅԱԼՅԱ.— Հը՞:

ՄԻՇԱ.— Ի՞նչ «հը»: Ես հո չեմ կարող քեզ եռման ջրի մեջ թաթախել կամ տաք գոլորշու վրա բռնել: Հետո էլ, որտեղի՞ց այդքան գոլորշի ճարեմ: Չէ՛, ձեզ անջատելու գործը գլուխ չի գա: Անհնելիք միջոց է: Այդպես էլ գիտեի:

ԼՅԱԼՅԱ.— Բա ես ի՞նչ անեմ: Ի՞նչ անի Բարսիկը: Օ՜յ:

*Սրտաճմլիկ մլավոց*

ՄԻՇԱ.— Իսկ ինչո՞վ է վատ ձեր վիճակը: Չե՞ք կարող մի հինգ րոպե համբերատար նստել: Հայրիկն ի՞նչ էր ասում, որ մենք խելագարների պես դեսուդեն չը՛նկնենք: Ասել կուզի՝ նստիր-մնա. Ծնողներին պետք է լսել:

*Սրտաճմլիկ մլավոց*

(Դադար: Միշան շարունակում է մտածել): Ճիշտն ասած, Բարսիկին ազատելու համար կա երկու միջոց՝ կամ սեղանի ոտքը սղոցել, կամ Բարսիկի պոչը կտրել:

*Նոր սրտաճմլիկ մլավոց*

ԼՅԱԼՅԱ.— Օ՜յ:

ՄԻՇԱ.— «Պրակտիկի ձեռնարկում» ասված է, թե ինչպես պետք է կտրել շան պոչը, բայց կատվի մասին ոչինչ չկա գրված... Խայտառակություն: Եթե պոչերը կտրում են, ասել կուզի բոլորի պոչերն էլ պետք է կտրել: Այստեղ ի՞նչ բացառություն կարող է լինել:

ԼՅԱԼՅԱ.— Օ՜յ:

Միշա.— Հերի՛ք է օյ հա՛ օյ ասես: Չես թողնում՝ մտածեմ: Միգուցե Բարսիկի պոչը շան պոչի նմա՞ն կտրեմ: Դու կլինես իմ ասիստենտը: Նախ Բարսիկին կափրենք...

ԼՅԱԼՅԱ.— Ի՞նչ բան է ասիստենտը:

ՄԻՇԱ.— Դե, ինչպե՞ս բացատրեմ... Ա՛յ, երբ ես գրատախտակի մոտ, խնդիր եմ լուծում, Պետյա Երշովը միշտ էլ ինձ համար ասիստենտություն է անում: Հասկանո՞ւմ ես:

ԼՅԱԼՅԱ.— Հասկանում եմ: (Անսպասելիորեն, խստաձայն): Է՜խ, դու՛, սկսնա՛կ պրակտիկ: Օ՜յ, կարծես պոկվեցի... Միայն թե շորիս վրա բիծ մնաց:

*Մլավոց*

Հիմա, Բա՛րսինկա, քեզ էլ կպոկեմ...



ՄԻՇԱ.— Լյալկա, դու մի՛ հուսահատվիր. այդ բիծը կհանենք: Ես այնպիսի միջոց կգործադրեմ, որ դու հետո զգեստդ չճանաչես: Ծծմբաթթու կճարենք...

ԼՅԱԼՅԱ.— Պատկերացնո՞ւմ եմ: Ոչ, ավելի լավ է՝ սովորական բենզինով հանեմ: Հիմա, Բաբսիկ, հիմա:

*Կատվի մլավոց*

ՄԻՇԱ.— Լյալկա, դու ոչինչ չես պատկերացնում: Բենզինը մանկական զվարճալիք է: Առհասարակ ես ու դու դատարկ բաներով զբաղվեցինք: Սոսնձել, պոկել... Հենց սկզբից պետք է բծեր հանեինք: Ա՛յ, դա զբաղմունք է: Պատկերացնո՞ւմ ես, հայրիկը կվերադառնա աշխատանքից, կտեսնի ջարդված ամանեղենը և հենց որ ուզենա բարկանալ, մենք իսկույն ցույց կտանք լուծույթը...



ԼՅԱԼՅԱ.— Բա՛բսինկա, Բա՛բսինկա, ես հիմա մկրատով կխուզեմ պոչիդ մազերը, և վերջ... Այսպես... այսպես... Եղավ:

*Ուրախ մլավոց*

ՄԻՇԱ.— Օ՜յ, օ՜յ, օ՜յ...

ԼՅԱԼՅԱ.— Ի՞նչ պատահեց:

ՄԻՇԱ.— Ես կարծեմ կպա աթոռին...

ԼՅԱԼՅԱ.— Ուռռա՜, ուրեմն՝ սոսինձը իսկական է: Հազա՜ր շնորհակալություն:

ՄԻՇԱ.— Հերի՛ք հիմարություն դուրս տաս:

ԼՅԱԼՅԱ.— Միգուցե պետք է քեզ եռման ջրի մե՞ջ դնել կամ տաք գոլորշու վրա՞ պահել:

ՄԻՇԱ.— Լյա՛լկա:

ԼՅԱԼՅԱ.— Հազա՜ր շնորհակալություն:

ՄԻՇԱ.— Օ՜յ... օ՜յ... օ՜յ...

*Ճռռոց*

ԼՅԱԼՅԱ.— Հերի՛ք է օյ հա՛ օյ ասես: Չես թողնում մտածեմ: Քեզ անջատելու համար, ճիշտն ասած, գոյություն ունի երկու միջոց...

ՄԻՇԱ.— (սպառնալից).— Լյա՛լկա, հիմարություն մի՛ անի...

ԼՅԱԼՅԱ.— Հանգի՛ստ: Ամեն ինչ հիմա կկարգավորենք: Որտե՞ղ է քո «Ձեռնարկը»: Ահա: (Թերթում է): «Սոսինձ»

ՄԻՇԱ.— Օ՜յ...

*Կատվի զոհունակ մլավոց: Թերթվող էջերի խշխշոց*

ԼՅԱԼՅԱ.— Առանց խուճապի: Հանգի՛ստ: Ահա: Միշա, բանից դուրս է գալիս, որ մենք ճիշտ չէինք սոսնձում ձիավորի գլուխը, բաժակն ու վազան: Սոսնձված մասերը պետք է ամուր կապեինք և այդպես թողնեինք մի օր՝ ու մի գիշեր: Ինչո՞ւ այս մասին ոչինչ չասացիր:

ՄԻՇԱ.— (լացակումած): Իսկ որտեղի՞ց իմանայի:

ԼՅԱԼՅԱ.— Ինչպե՞ս թե որտեղից: Չէ՞ որ այստեղ գրված է:

ՄԻՇԱ — (դարձյալ լացակումած): Որտե՞ղ:

ԼՅԱԼՅԱ.— Ահա, այստեղ:

ՄԻՇԱ.— Ես մինչև այդտեղ չէի կարդացել. մինչև այստեղ էի կարդացել:

ԼՅԱԼՅԱ.— Մինչև կե՞սը: Է՜խ, դո՛ւ, անգլո՛ւխ ձիավոր:

ՀԱՂՈՐԴԱՎԱՐ.—

Պատմենք այս դեպքը բոլորին՝
Ծանոթներին, ընկերներին։
Մեզ կգրեն և՛ Մոսկվայից,
Ե՛վ Օրյոլից, և՛ Ուֆայից,
Լենինգրադից կգա նամակ,
Թե ոչ մի տեղ, առհասարակ,
Միշայի պես տղա չկա:
Բայց և այնպես նմանը կա:





Կգա Օմսկից այլ պատասխան,
Թե այդպիսիք մեզ մոտ էլ կան:
Մեզ կգրի և Լյովը.
«Շփոթել եք, թե դա ով է.
Ոչ թե Միշան է այդ տղան,
Այլ Լյովցի անկարգ Վովան»:
Ճիշտ է, թե ոչ, բայց կլսեն
Բոլոր մարդիկ նրա մասին,
Հեռվից-հեռու կճանաչեն
Միշայի պես տղաներին:
Միշայի հետ անկարգ Վովան
Վատ համբավից շատ կամաչի...
Ով անգլուխ ձիավոր է,
Գլխի մասին կմտածի:

# ԽՆՁՈՐԸ

Դ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

*Մի նկար էր տեսել գրքում*
*Մեր Գայանեն մի օր՝*
*Փոքրիկ տղան խաղ էր անում՝*
*Ձեռքին կարմիր խնձոր:*

*Եվ անցել էր ամսից ավել,*
*Երբ Գայանեն կրկին*
*Արջուկի հետ թախտին նստել,*
*Նայում էր նույն գրքին:*

*Բայց «վա՜յ» արեց ու զարմացած*
*Հանկարծ դիմեց մորը.*
*—Քանի՜ օր է... դեռ այս տղան*
*Չի կերել խնձորը:*

# ՊՐԱԳԱՆ ԾԱՓԱՀԱՐՈՒՄ Է, ԿԵՑՑԵՍ, ՎՈԼՈԴՅԱ...

Գ. ԱՌԱՔԵԼՅԱՆ

*Դահլիճը փոթորկվում է: Լուսանկարչական տանելի ապարատները համառորեն փընտրում են հերոսին: Մերթ ընդ մերթ փայլատակում է լուսանկարչական ապարատի կուրացուցիչ լույսը, թղթակիցը փութկոտությամբ նոր դիրք է գրավում ամբոխում և նորից ուղղում օբյեկտիվը: Ողջույնի բացականչությունները ալիքավորվում են ու, հակառակ օվկիանի նման ուռչելով, մեկ պայթում են, մեկ թիչ հանդարտվում՝ հաջորդ պահին ուժգին պոռթկալու համար: Իսկ կենտրոնում, լույսերով ողողված հարթակի վրա նա է, բռնցքամարտիկը, որը բարեկամաբար ժպտում է բոլորին, ձեռքով ողջույնի նշաններ ուղարկում:*

*—Սվետսկի Սվա՜զ, Սվետսկի Սվա զ, Սվետսկի Սվա՜զ:*[1]

*Հետո մի խումբ գոչում է.*

*—Ենգիբարյա՜ն...*

*Դահլիճն այդ անունն էլ է երկար անգամ կրկնում: Պրագան ծափահարում է սովետական սպորտսմենին. Պրագան հիացած է Ենգիբարյանով, երևանցի բռնցքամարտիկը նվաճել է չեխերի սիրտը:*

[1] Սվետսկի Սվազ–Սովետական Միություն (չեխերեն)

Ու ոգևորված մարդկանց օվկիանոսը շարունակում է ալեկոծվել: Դա մի արտասովոր տեսարան էր: Եվրոպայի չեմպիոնատում Վոլոդյա Ենգիբարյանը եզրափակիչ մրցությունում փայլուն հաղթանակ էր տարել չեխ սպորտսմեն Իվանուշի դեմ: Եվ, չնայած դրան, պրագացիները այդպես ջերմորեն ողջունում էին իրենց համաքաղաքացուն պարտության մատնած տղային:

«Իվանուշին հաղթելով, Ենգիբարյանը հաղթեց չեխերին», — այսպիսի վերնագրով լույս տեսան Պրագայի թերթերը:

Իսկ նա շարունակում է ժպտալ, բարեկամաբար թափահարել ձեռքը: Ու աչքերի առջև կենդանանում են վաղուցվա տեսարանները...



Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

Մելբուռն, օլիմպիական 16-րդ խաղերը:

Առաջին իսկ մարտը լեհ հայտնի սպորտսմեն Դրոգոշի հետ է: Վոլոդյան լավ է ճանաչում մրցակցին: Դա նույն Դրոգոշն է, որը մեկ տարի առաջ, Եվրոպայի չեմպիոնատում հաղթանակ տարավ և Ենգիբարյանից ետ նվաճեց Եվրոպայի չեմպիոնի կոչումը: Իսկ նա ինչքա՜ն ուժ ու եռանդ էր դրել այդ կոչման համար: Վարշավա: 1953 թիվ: «Գվարդիա» դահլիճ: 20-ամյա Վոլոդյան առաջին անգամ էր մասնակցում միջազգային նման մեծ մրցության: Սպորտային «կանխագուշակներից» և ոչ մեկի մտքով անգամ չէր անցնում, որ հաղթողի դափնին կարող է նվաճել այդ «անփորձ» երիտասարդը: Բայց կատարվեց «հրաշքը»: Չնայելով վիրավոր ձեռքին, Ենգիբարյանը մարտնչեց գերազանց, հաղթեց մրցակիցներին ու դարձավ չեմպիոն: Իսկ ընդամենը երկու տարի անց, ահա այդ Դրոգոշը պարտության մատնեց նրան: Ենգիբարյանը դարձավ «նախկին չեմպիոն»:

Այժմ էլ Մելբուռնում ահա երկու ախոյանները նորից միմյանց դեմ են կանգնած: Ու սպասում է մարտը: Լեհն ուժեղ է, ճարպիկ, կտրուկ են նրա գրոհները: Իսկ Վոլոդյան... Նա հանգիստ է, սառնասիրտ, խույս է տալիս և նույն անընդհատությամբ վրա բերում պատասխան հարվածը: Անցնում է առաջին ռաունդը, երկրորդը, երրորդը: Հաղթանակ: Լեհը շնորհավորում է Վոլոդյային, բայց գլուխը կախ թողնում է մրցահրապարակը. Իսկ նա ողջունում է մրցակցին ու հաղթական կանչերի տակ հանդարտ քայլում դեպի հանդերձարան:

Ու շարունակվում են մարտերը: Համառ է պայքարը, կատաղի: Իսկ Վոլոդյան հանգիստ է, ուժերին վստահ: Եվ հաղթում է: Նրան օլիմպիական ստադիոնն է ծափահարում, նրա կրծքի վրա աշխարհի չեմպիոնի ոսկե մեդալն է:

∴

Ոսկե Պրագա: Արևի շողերը խաղում են Վլտավայի վճիտ կոհակների հետ, մակույկների տակ մեղմիկ ճողփում է ջուրը: Երկնքում վեհորեն մխրճվել են նշանավոր 300 գմբեթները: Բուրում է յասամանը, շենքերի պատերին գալարվելով աճել են յուրատեսակ վարդի թփերը:

Գեղեցիկ է Պրագան, գարնանաբույր: Մարդկանց ուրախ կարկաչը գնում-միաձուլվում է գետի ալիքների խշշոցին, ու քաղաքը երգում է, զարթուն է շնչում:

Ենգիբարյանը, Աբրամովը, Գրիգորևը, Ծատկովը և էլի ուրիշ սպորտսմեններ քայլում են գեղեցիկ փողոցներով, հինավուրց արձանների, հոյաշեն տաճարների, բազմահարկ շենքերի մոտով: Նրանց ժպտում, ողջունում են պրագացիները: Հաղթանակի համբավն արդեն հասել է ամենուր:

Ահա և Կարլովի թանգարան-կամուրջը:

Հուշարձանները մարդկանց ուղեկցում են դեպի դարերի խորքը, բազմաթիվ լեգենդներ պատմում:

Տղաները կանգնում են. Վլտավան քիչ ալիքավորվել է, ջուրը զարնվում է գրանիտյա պատնեշներին ու հազարավոր բյուրեղներ դարձած՝ չորս կողմը թռչում:

Վոլոդյան երկար է նայում վազող ջրերին, հեռու քաղաքին, կանաչի մեջ թաղված տներին: Նա երջանիկ է, նա նորից Եվրոպայի չեմպիոն է, «նախկին չեմպիոնը» այժմ Դրոզդն է: Նրա դեմքի վրայով ժպիտ է սահում: Ահա արդեն տասը տարի է, նա հանդես է գալիս բռնցքամարտի մրցահարթակների վրա, հարյուրից ավելի մարտ է մղել, շատ է հաղթել, բազմաթիվ ոսկե մեդալներ, մրցանակներ շահել: Դեռ երեկ Չեխոսլովակիայի Մինիստրների Խորհրդի նախագահ Վ. Շիրոկիի հատուկ բյուրեղյա գավաթը հանձնվեց իրեն:

Տասը տարի. ինչքա՞ն բաներ են փոխվել, ինչից սկսեց և ուր հասավ: Վոլոդյան մի րոպե կարծես մոռանում է շրջապատը, բոլորին, բոլորին ու հիշում...

* * *

...Դահլիճում անընդհատ հարվածների ձայներ էին լսվում: Փակ դռան մոտ մի քանի տղաներ էին խմբված: Նրանցից





ամեն մեկն աշխատում էր փոքրիկ անցքից ներս նայել. ի՞նչ է կատարվում այնտեղ, դահլիճում: Վերջապես հերթը հասավ նիհար, փոքրահասակ տղային:

—Վոլոդյա, շո՛ւտ, շո՛ւտ,—ընկերոջ ականջին շշնջաց մի տղա:

Տղան, որին Վոլոդյա էին կանչում, դեմքը մոտեցրեց դռանը: Նա կանգնեց ոտքերի թաթերի վրա, որպեսզի աչքը հասնի կլոր անցքին: Եվ ահա նրա առաջ բացվեց տեսարանը: Տղաներից մի քանիսը, «մարտի» էին բռնվել գնդակների հետ, մյուսները հարձակվում էին իրար վրա, ոմանք պարաններով ցատկոտում էին տեղում: Մարզիչը արագ մոտենում էր մի խմբից մյուսը, դիտողություն անում, ստիպում նորից փորձել, կրկնել, մինչև որ ստացվի վարժությունը:

—Հետաքրքիր է,—դուրս թռավ Վոլոդյայի բերանից, որ դեռ նայում էր բանալու անցքից:

—Հիմա էլ ես եմ ուզում նայել,—Վոլոդյայի թևը քաշեց մի տղա:

Վոլոդյան ոչինչ չպատասխանեց, նա հափշտակված դիտում էր: Հետո հանգիստ կանգնեց և կամաց բացեց դուռը: Ընկերը այս անգամ նորից ուժեղ քաշեց նրա թևը: Բայց տղան ուշադրություն չդարձրեց: Նա այժմ կանգնել էր կիսաբաց դռան շեմքին ու նայում էր:

Երկու պատանիներ պատրաստվեցին մարտի: Ահա նրանցից մեկը առաջ նետվեց, բայց մյուսը խույս տվեց և հարվածեց:

—Ճիշտ է,—լսվեց մարզիչի ձայնը:

Վոլոդյան ինքն էլ չիմացավ, թե ինչպես անցավ շեմքից: Նա սթափվեց, երբ մարզիչն արդեն կանգնել էր նրա դիմաց և արդեն երկրորդ անգամ կրկնում էր.

—Դու ի՞նչ ես ուզում, տղա:

—Ուզում եմ ես էլ պարապել,—հազիվ լսելի արտասանեց Վոլոդյան:

Մի փոքր լռություն տիրեց: Մարզիչը քննող հայացքով նայեց փոքրիկին:

—Ի՞նչ ես ուզում:

—Պարապել:

Այս անգամ Վոլոդյայի ձայնը հնչեց վճռաբար, և այդ դուր եկավ մարզիչին:

—Դե, ի՞նչ կա որ, վաղվանից կարող ես գալ:

Տղայի դեմքը ճառագայթեց:

Հաջորդ օրը մարզվողների երկար շարքում տեղ գրավեց նաև Երևանի № 8 արհեստագործական ուսումնարանի սան, 14-ամյա փոքրիկ Վոլոդյան:

* * *

Ենգիբարյանը առանձնապես լավ է հիշում իր առաջին մարտը, առաջին պարտությունը:

Մրցակիցն ուժեղ է, բայց Վոլոդյան չի վախենում, նա համարձակ առաջ է գալիս.

—Դեմքդ, դեմքդ,—հնչում է մարզիչի ձայնը:

Բայց ուշ է, ծանր հարվածն իջնում է Վոլոդյայի գլխին: Նա օրորվում է, իջնում հատակին: Քիչ հետո բարձրացնում է գլուխը. մարզիչի խիստ հայացքը շոյում է նրան, իսկ դիմացն ախոյանն է, պատրաստ, ձեռքերն առաջ, տեղում թռվռում է: Վոլոդյան արագ ոտքի է կանգնում: Այժմ նա ավելի զգույշ է: Մարտը շարունակվում է: Վոլոդյան նորից մի քանի ուժեղ հարվածներ է ստանում, նորից ընկնում է հատակին, բայց ներսը կարծես մի բան եփ է գալիս: Նա ավելի համառ է դառնում, կատաղի, վճռական:

Պարապմունքների վերջում մարզիչը մոտեցավ նրան:

—Քեզանից լավ բռնցքամարտիկ դուրս կգա, համառն ես, շարունակիր:

* * *

Առաջին մրցությունը նշանավորվեց առաջին հաղթանակով: Հետո նրան մտցրին հավաքական թիմի մեջ: Պատանին մարզվում էր մեծ եռանդով: Այժմ նրա մարզիչը երկրի անվանի բռնցքամարտիկներից մեկն էր՝ Լյովա Արիստակեսյանը: Մրցահարթակի հին վարպետին դուր էր գալիս Վոլոդյայի վճռականությունը, մարզվելու, հաղթելու անհուն կամքը:

1949 թվականին Վոլոդյան դարձավ ռեսպուբլիկայի չեմպիոն: Հետո հանդես եկավ միութենական մրցումներում, շատ բան տեսավ, շատ բան սովորեց: Ու նորից մարզվեց, երկար, քրտնաջան: Երբ հաղթանակից հետո նրան գովում էին, խրախուսում, նա ասում էր.

—Ավելի լավ կարող էի, մյուս անգամ կտեսնեք:

Եվ, իրոք, հաջորդ մրցմանը նա հանդես էր գալիս ավելի ոգևորված, համառ և նոր վարպետություն էր ցուցադրում:

1954 թվականին Վոլոդյան արդեն իր քաշում ամենաուժեղ բռնցքամարտիկն էր ամբողջ Սովետական Միությունում, իսկ երկու տարի անց, նա դարձավ աշխարհի «առաջին ձեռնոցը»:

* * *

Վլտավայի ջրերը խռովվում են, խշշալով գահավիժում արհեստական սանդուղքներից, յասամանի բույրն է տարածվում ջրերի կոհակների վրա:

Վոլոդյան նայում է շուրջը, նրան ժպտում են քաղաքը, մարդիկ, իր ընկերները՝ Աբրամովը, Գրիգորևը, Շատկովը, բոլորը, բոլորը: Նրանով հպարտանում են Սովետական Միությունը, հայրենի Երևանը:

Պիոներները հեռվից նկատում են անվանի սպորտսմենին: Նրանք ուրախ կանչերով վազում են նրա մոտ, խոսում անծանոթ, բայց սրտին մոտ լեզվով ու մի հսկա ծաղկեփունջ տալիս նրան: Վոլոդյան ժպտում է երեխաներին, շոյում նրանց ոսկեգանգուր մազերը: Իսկ պիոներները անընդհատ կրկնում են.

—Սովետսկի Սվազ, Ենգիբարյան, Սովետսկի Սվազ, Ենգիբարյան...



# Չարաճճին

Վ. ԿԱՐԵՆՑ

Մեր քաղաքում,
Մեր նրբանցքում
Կա մի Վաչիկ
Չարաճճի...
Կարմիր փողկապ ունի վզին,
Ուշադիր է նստում դասին,
Ասում են՝ լավ է սովորում,
Միշտ «5»—եր է նա տուն բերում:
Ճանաչո՞ւմ եք դուք Վաչիկին,
Մեր նրբանցքի չար Վաչիկին:

Ահա տեսեք,
Նրբանցքով մեկ՝
Հարայ-հրո՜ց,
Տուր ու դմփո՜ց...

Այդ Վաչիկն է, «քաջ» ու «արի»,
Մի խմբի հետ տղաների,
Քար է նետում դարբասներին,
Կատուներին ու շներին:

Նրա քարը չի վրիպում,
Լապտերներն են մեկ-մեկ ընկնում:
Եվ լինում է այդպես հաճախ.

Ահա նրա. հայրը խաղաղ
Տուն է դառնում երեկոյան.
Ճամփին այնքա՜ն լույսեր վառման,
Ի՜նչ ուրախ է նրա հոգին,
Տուն է դառնում աշխատանքից:

Նա թեքում է ճամփան արագ,
Շտապ-շտապ մտնում նրբանցք:
Նրբանցքում մութ՝ փոսեր ջրի,
Քիչ է մնում, թե գլորվի,
Քիչ է մնում, թե ընկնի ցած,
Նա բախումից հանդիպակաց:

Գնում է նա ու փնթփնթում,
Մի խոր զայրույթ իրեն սրտում
«Ո՞վ է ջարդել այսօր կրկին
Լապտերները մեր նրբանցքի:»

Եվ նա գիտի՝ արդյոք հիմա,
Բանվոր հայրը չար Վաչիկի,
Որ ջարդել է հենց իր տղան՝
Լապտերները մեր նրբանցքի:



Նկ. Դ. ՍԱՐԳՍՅԱՆԻ




Ա. ՔԱԼԱՆԹԱՐՅԱՆ

(Հորս պատմածը)

Նկ. ԱԼ. ԳՐԻԳՈՐՅԱՆԻ

Հաճախ վաղուց անցած, մոռացված դեպքերը անսպասելիորեն մի բառով, մի նշանով, կամ նույնիսկ ծանոթ մի դիմագծով, ասես միանգամից կյանք են առնում, թափ են տալիս իրենց վրայի փոշին ու գալիս կանգնում են փոքր-ինչ շաղված աչքերիդ առաջ։ Երեկ փողոցում մի տղա ձեռքը մեկնեց դեպի ընկերոջ սովորականից լայն անդրավարտիքը ու հարցրեց.

—Լսի՛ր, դրա կարողը սաղ ա՞...

Երկուսն էլ քրքջացին ու անցան։ Իսկ ես քեզ հիշեցի, Սահակ, մանկության իմ ընկեր։

* * *

Վտիտ մարմնով, ձողի պես բարակ ոտներով, եղեգնի նման դյուրաբեկ և ուռենու նման տխուր մի տղա էր Սահակը։ Միշտ խոնարհ ու լուռ էր նա։ Մենք՝ նրա հասակակիցները, դասամիջոցներին աղմուկ-աղաղակ էինք բարձրացնում, խաղեր հնարում, երգում, միայն Սահակն էր, որ չէր մասնակցում մեր խաղերին։ Գալիս, կանգնում էր հեռու, իր խոշոր ու թախծոտ աչքերը հառում էր մեզ, որոնցում նման պահերին կենդանի, չարաճճի ինչ-որ կայծ էր խաղում, բայց երբ մերոնցից մեկը, համենայնդեպս, կանչում էր.

—Սահակ, արի դու էլ խաղա...

—Չէ՛, չէ՛, չե՛մ ուզում,—շտապ մրմնջում էր նա ու աննկատելի թարթվում մեր աչքից։

Բայց ամենից ուշագրավը Սահակի բլուզն էր։ Դա թեև միշտ մաքուր, բայց բազմաթիվ, բազմաձև ու բազմագույն կարկատաններով ծածկված բաթանե մի բլուզ էր, որի իսկական կտորը որոշելու համար՝ անգամին ժամանակ և կարողություն էր հարկավոր։ Անգույն ու մի հին բլուզ էր դա, որը ժամանակին հագել էր նաև Սահակի հայրը։ Ես ինչքան հիշում եմ Սահակին, այդ բլուզով եմ հիշում՝ գույնզգույն, տասնյակ կարած վերմակի պես։

Էդ բլուզի համար շատ էր տանջվում Սահակը։ Էդ բլուզի համար մեր տղաները, հատկապես դուքանչիների երես առած որդիները, շատ էին ձեռք առնում նրան, ամեն դատարկ առիթով հարցնում էին.

—Սահակ, հորդ օղորմի, դուզն ասա, դրա կարողը սաղ ա՞, բալի մինն էլ մեզ համար ա կարում։

—Հա՜, հա՜, հա՜,—հռհռում էին մյուսները,— դուզ, դրա կարողը սաղ ա՞։

Սահակը ոչինչ չէր պատասխանում։ Նա վիրավորողներին էր նայում թախծոտ ու խոնարհ իր աչքերով, ինչպես իր հայրն էր մի ժամանակ նայում նրանց ծնողներին, ու լռում էր։ Հետո ես տեսնում էի, թե ինչպես դպրոցի մի անկյունում կծկրված լաց էր լինում Սահակը, լաց էր լինում վիրավորանքից ու զայրույթից։ Խեղճ, փոքրիկ Սահակ...

Երբ մի օր հարցրի, թե ինչո՞ւ է միշտ տխուր, ինչո՞ւ ինքն էլ մեզ հետ չի խաղում.

—Չէ՛, չի ըլնի, ապերս ջան,—ասաց Սահակը ու փորձեց ժպտալ,—ես հո երեխա չեմ։

—Ինչի՞, ուրեմն մենք երեխա ենք,—վիրավորվեցի ես,—արի, արի խաղանք։

—Չէ, ապերս ջան, չի ըլնի,—խնդրելով, բայց վճռական արտասանեց նա։

Սահակենք հորեղբորենցս բակումն էին ապրում, եվ ամեն անգամ, հորեղբորս երկհարկանի տան պատշգամբից ես տեսնում էի, թե ինչպես էր Սահակը մինչև գոտկատեղը մերկ (նա բլուզը պահում էր միայն դասերի համար), իր գործագույն, նիհար ձեռքերով փայտ ջարդում օջախի համար, ջուր բերում, բոբիկ ոտքերը թաղին՝ մշակում մի քանի ոտնաչափ բանջարանոցը, ապրյուրի չեչոտ քարին լվանում իր փոքրիկ եղբայրների ու քույրերի ոտքերը։

Երբեմն—երբեմն տեսնում էի նաև Սահակի մորը՝



միշտ գունատ, մոմագույն դեմքով, նա դանդաղորեն դուրս էր գալիս հողաշեն իր ներքնահարկից ու նստում դռան շեմքի քարին, երբ արև էր։ Ես տեսնում էի անգամ, որ նա շատ էր հազում, հազում էր անձայն, շալի ծայրը բերանին, և հազից ցնցվում էին նրա նիհար մարմինն ու ուսերը։ Հետո, երբ արևը թեքվում էր, ու շենքի ստվերը շեղակի ընկնում էր նրա վրա, հայտնվում էր Սահակը, գրկում էր մորը, և նրանք իջնում էին ներքնահարկ։

Իսկ հաջորդ առավոտյան նորից դասի էր գալիս Սահակը՝ գրքերը շորի մի տոպրակի մեջ, բոբիկ, մինչև ծնկները հասնող մի շալվարով, իսկ հագին այն բլուզը, միշտ մաքուր ու անգույն այն բլուզը, որի վրա յուրաքանչյուր ամիսը իր գույնի կարկատանն էր դնում։ Եվ նորից տղաներից ոմանք, առանց հոգնելու, բրբջում էին ու հարցնում.

—Սահակ, հորդ օղորմի, դրա կարողը սաղ ա՞...

Արդեն ցրտերն ընկել էին ու աշնան վերջին տերևները առավոտները եղյամով էին ծածկվում։ Մի քանի օր էր, ինչ Սահակը դպրոց չէր գալիս։ Ես էլ չէի լինում հորեղբորս տանը, որ իմանայի, թե ինչ է պատահել նրան։ Մտածում էի, որ երևի ցուրտն է պատճառը։ Չէ՞ որ Սահակը կոշիկներ չուներ։ Իմ հին կոշիկները, շորի մեջ փաթաթած, ամեն օր որոշում էի տանել Սահակին, բայց չէի համարձակվում՝ հպարտ էր Սահակը։ Իսկ ես չէի ուզում վիրավորել նրա վիրավոր հոգին։ Դպրոցում շատերն արդեն մոռացել էին նրան, իսկ ովքեր չէ, հաշտվել էին այն մտքի հետ, որ Սահակն այլևս դպրոց չի գա։

Բայց եկավ նա։ Երկար դասամիջոցն էր. խաղում էինք բակում, վազվզում, թռչում միմյանց վրայից, գոռում-գոչում էինք ուրախ, երբ եկավ Սահակը։ Էլի բոբիկ էր նա, մինչև ծնկները հասնող շալվարով ու հագին էլի նույն բլուզն էր։ Խաղը մի վայրկյան դադարեց։

—Արա, Սահա՞կը,— ձայնեցին մի քանիսը։

—Ինչի՞ չէիր գալիս,— մոտեցա նրան ես։

Իսկ դուքանչու որդին քաշեց նրա բլուզի մի կարկատանը.

—Սահակ, դուզն ասա,— բռռչաց նա,— դրա կարողը սաղ ա՞։

Տղերքը խում ճըթճըթացին, ու բլթի մի կտոր կախվեց ցած՝ մերկացնելով նրա ուսերը, թուխ մարմինը։

Նա կանգնած էր գունատ, խորն ընկած աչքերով, որոնց շուրջը մեկն ասես կապույտ շրջանակներ էր գծել։ Նա կանգնած էր հոգնած ու գլխիկոր՝ ձեռքերով գրքերի տոպրակը սեղմած։ Հետո նա բարձրացրեց գլուխը, ու ես արցունք տեսա նրա երկնագույն աչքերում։

—Դրա կարողը մերս էր,— ճերմակած շուրթերով մրմնջաց նա,— երեկ թաղեցինք... Սաղ չի...

Եվ մի ակնթարթում օրերով ու ամիսներով կուտակված վիշտն ու վիրավորանքը դուրս պոռթկաց ուժով։ Եվ հեկեկում էր Սահակը, անձայն ու ծանր՝ մեծ մարդու պես, ու ցնցվում էին նրա ոսկրոտ թիակները մաշված մաքուր, կարկատած այն բլուզի տակ։

Լուռ էինք մենք ու ցնցված։ Լռել էր նույնիսկ դուքանչու լկոտ որդին։ Շրջապատել էինք Սահակին, բայց մխիթարելու խոսքեր չկային։ Իսկ նա հեկեկում էր ավելի ու ավելի ուժգին, դադարում էր վշտից ու շշնջում էր ճերմակած շուրթերով.

—Չէ՛, տղերք ջան, դրա կարողն էլ սաղ չի...

# ԱՍԵՂԸ

Մ. ԽԵՐԱՆՅԱՆ

Փոքրիկ ասեղ,
Փայլուն ասեղ,
Մայրդ բանուկ ու բարակ,
Ձեռքում բարի
Իմ մայրիկի
Կարում ես վարժ ու արագ։

Իսկ իմ ձեռքում
Քիթդ տնկում,
Ծուռ ես գնում, շուռ գալիս.
Մեկ էլ հանկարծ
Մատս ես մտնում,
Արյուն հանում, ցավ տալիս։

Ասես, փոքրիկ
Իմ սուրուլիկ,
Մայրիկիս հետ հաշտ, հլու,
Ինչո՞ւ ինձ հետ
Խելառ ու խենթ՝
Հակառակ ես, չար ես դու...

Բայց դու իզուր,
Ասեղ իմ սուր,
Ուզում ես ինձ չարչարել.
Մայրիկիս պես
Շուտով և ես
Կսովորեմ լավ կարել։

# ՍԵԴԱՆ, ԾԻՏՆ ՈՒ ԱՆՁՐԵՎԸ

Խաղ էր անում Սեդան այգում,
Ծիտն էր ծառի վրա երգում։
Երբ որ ուժգին, անձրևաբեր
Գոռգոռացին վերից ամպեր,
Սեդան փախավ, մտավ տունը,
Ծիտն էլ թռավ դեպի բույնը։

Անձրև տեղաց առատ-առատ,
Ցողեց ծառավ այգի ու արտ։
Անձրևից ետ արևն էլի
Շողաց պայծառ ուրախալի։
Ելավ Սեդան ոսկեգանգուր
Ու կուշտ շնչեց օդը մաքուր։

Ծիտն էլ ելավ, ասաց.— Ճի՛կ-ճի՛կ,
Ձեզ թրջըվել, սիրուն աղջիկ։

# ՀԱՅԿԱԿԱՆ ԺՈՂՈՎՐ

## ԵՐԿՈՒ ԱՂՎԵՍ

Նկ. Լ. ՄԱՆԱՍԵՐՅԱՆԻ

Ժամանակով մի աղվես հյուր է գնում իր ծանոթ աղվեսի մոտ: Տանտերը սիրով ընդունում է նրան, ապա դեսից-դենից խոսելուց հետո ասում.

— Է՜, բարեկամ, ճարպիկ չես դու: Ուրիշ բան եմ ես, հազար ու մի հնարք գիտեմ, որոնցով բոլոր վտանգներից ազատվում եմ:

Ապա նա հպարտ ու արհամարհական մի հայացք է գցում խեղճ ու կրակ ընկերոջ վրա, որը լուռ լսում էր նրան:

— Լավ, մի քիչ սպասիր, հիմա գնամ մի հավ բերեմ՝ ուտենք, հետո էլ տես, ինչ քեֆ պիտի սարքենք, — ասում է տանտերը և հեռանում:

Հյուրը սպասում է, սպասում, տանտերը չի գալիս: Տեսնում է, որ շատ ուշացավ, վեր է կենում և գնում նրան որոնելու: Դես է մանում գալիս, դեն է մանում գալիս, մեկ էլ, ի՜նչ, տեսնում է նրան թակարդի մեջ:



— Վա՜յ իմ գլխին, բարեկամ, ինչպե՞ս կարող էիր քեզ նման հազար ու մի հնարք իմացողը թակարդն ընկնել:

Տանտերը գլուխը կախում, հոնքուր-հոնքուր լաց է լինում:

— Լաց մի՛ լինի, բարեկամ, ես քեզ կազատեմ: Մի հնարք կա, որ հազար արժի, հազար հնարք կա, որ մեկն էլ չարժի:

Ես կգնամ և թակարդից մի քիչ հեռու կպառկեմ: Ով որ է, թակարդ դնողը կգա, որ քեզ տանի, մաշկդ հանի: Դու սուտ սատկած ձևացրու և պառկիր: Մարդը կկարծի, թե սատկած ես, քեզ կհանի թակարդից, որ գցի պարկը: Այդ ժամանակ ես պոչս կշարժեմ, նա կտեսնի ինձ և կգա դեպի իմ կողմը, որ ինձ էլ բռնի: Երբ մոտենա, ես կփախչեմ: Մինչ այդ, դու էլ կփախչես: Այսպիսով կազատվես մահից:

Հենց այդ ժամանակ հեռվից երևում է որսորդը: Թակարդն ընկածը իսկույն պառկում է և սուտ սատկած ձևանում, իսկ նրա հյուրը վազում է և թակարդից մի քիչ հեռու՝ պառկում է:

Գալիս է մարդը, աղվեսին տեսնում թակարդում, ուրախանում, հետո կարծելով, թե սատկած է, հանում է նրան թակարդից, բացում պարկի բերանը, որ գցի պարկը: Այդ պահին հյուր աղվեսը թափահարում է պոչը: Մարդը զարմացած նայում է այդ պոչի կողմը, նկատում աղվեսին և վազում դեպի նա, այդ ժամանակ հյուր աղվեսը վեր է թռչում պառկած տեղից և փախչում: Տանտեր աղվեսն էլ իր գլխի ճարն է տեսնում: Որսորդը շշմած ու բերանբաց նայում է իր ձեռքից փախչող երկու աղվեսներին:

# ԴԱՆԱՆ ՀԵՔԻԱԹՆԵՐ

## ԱՂՎԵՍՆ ՈՒ ԱՌՅՈՒԾԸ

Ժամանակով աղվեսը և առյուծը ճամփա են գընում։ Հասնելով մի մեծ գետի, աղվեսն ասում է.

— Ո՜վ կենդանիների թագավոր, մի քիչ վեր բարձրանանք, այնտեղ կամուրջ կա, կամուրջով անցնենք գետի մյուս ափը։

— Ոչ, արի գետի միջով անցնենք,— պնդում է առյուծը։

— Այս գետից անցնելը վտանգավոր է, ասում են այս ջրում մեծ—մեծ ձկներ կան, որոնք անցնողներին կարող են վնասել։

— Ես քեզ ասում եմ գետով անցնենք, ի՞նչ կա վախենալու, ամբողջ ցեղով կասկածամիտ և վախկոտներ եք։— Ասում է առյուծը և իրեն գցում ջուրը։

Աղվեսն էլ իր խոսքին հավատարիմ, վազում է կամուրջով անցնում գետի մյուս ափը։ Հանկարծ նրա ականջը ծակում է առյուծի մռնչյունը։ Աղվեսը շնչակտուր վազում է առյուծի մոտ։ Առյուծը կաղև-կաղ մի կերպ անցնում է գետի մյուս ափը, պառկում խոտերի վրա և սկսում է լիզել ճղված ոտքից հոսող արյունը։

Աղվեսն հարցնում է.

— Այդ ո՞վ վիրավորեց քո ոտքը։

— Շնաձկները։

— Է՜, ի՞նչ ասեմ, ասողին էլ լսող է պետք,— ասում է աղվեսն ու թողնում հեռանում։



## ԻՄԱՍՏՈՒՆԸ ԵՎ ԹԱԳԱՎՈՐԸ

Ժամանակով մի թագավոր է լինում։ Նա իր երկրի իմաստուններից մեկի ծննդյան տարեդարձին նրան մի խուրձ խոտ է նվեր ուղարկում։ Իմաստունը սիրով ընդունում է թագավորի ուղարկած նվերը, նրա պատգամավորին լավ հյուրասիրում։ Ապա որպես փոխհատուցում՝ թագավորին նվեր է ուղարկում մի չաղ խոյ և նամակ։



Թագավորը ուրախությամբ ընդունում է նվերը, ապա իր գրագրին հրամայում է իմաստունի ուղարկած նամակը կարդալ։ Գրագիրը բացում է ծրարը և բարձրաձայն կարդում.

«Թագավոր, ամեն մի մարդ իր կերածից է նվեր ուղարկում ուրիշին»։

Թագավորը շշմում է, նա գրագրի ձեռքից կատաղած խլում է նամակը և պատառ-պատառ անելով, շպրտում հատակին։

Մշակեց՝ Ա. ԱԴԱՄՅԱՆ

# Լեգենդներ



## ԲԻՆԳՅՈԼ

ի կույր աղջիկ իր եղբոր հետ Մուշի և Էրզրումի միջև ընկած սարերում ոչխար է արածացնելիս լինում:

Մի օր այս աղջիկը կուրորեն գնում է մի աղբյուր է գտնում, լվացվում է, և աչքերը բացվում են: Կարծես աշխարհը տալիս են նրան:

Հապշտապ վազում, տուն է ընկնում: Հայրն ու մայրը որ տեսնում են, ապշած հարցնում են թե՝ ա՛յ աղջի, այդ ինչպե՞ս եղավ, որ աչքերիդ լույսը բացվեց: Սա թե՝ սարի գլխին մի աղբյուր կար, լվացվեցի, և աչքերս բացվեցին: Գալիս տեսնում են, որ ոչ թե մեկ, այլ հազար աղբյուրներ են գլգլում... Եվ այդ օրվանից սարի անունը դնում են Բինգյոլ (Բյուրակն):



## ԴԱՎԹԻ ՔԱՐԸ

ասունցի Դավիթը հովիվ եղած ժամանակ՝ Սև սարից ոչխարները վայր է իջեցնում լեռան ստորոտը՝ Մուշի դաշտը:

Ճաշկիթին, երբ ոչխարները համախմբված էին, և կանայք կթելով էին զբաղված, լեռան կողերից մի հսկա ժայռ է պոկվում և սկսում է գլորվել դեպի ոչխարներն ու այնտեղ հավաքված ժողովուրդը:

Դավիթը տեսնելով, որ ժայռը պիտի գա ու ճզմի թե՛ ժողովրդին, և թե՛ ոչխարներին, արագ ցատկում է ժայռին ընդառաջ և իր աջ ձեռքը դեմ տալիս գահավիժող ապառաժին: Ժայռը տեղն ու տեղը մնում է, իսկ Դավթի ձեռքը դրոշմվում է ժայռի վրա.

Այդ ժայռը մինչև հիմա էլ մնում է և կոչվում է «Դավթի քար»:

Հավաքեց՝ .Ա ՂԱՆԱԼԱՆՅԱՆ




Ար. ՍԱՀԱԿՅԱՆ

Աքլորները դեռ շատ հնում
Այնքան երկար էին քնում,
Որ ձեն չտար թե մայր հավը,
Հաճախ չէին թողնի թառը:
Սիրում էին այդ մորը լավ
Ճուտ ու վառեկ, աքլոր ու հավ:
Եվ ընտանի ամեն թռչուն
Ծուղրուղու էր նրան կոչում:
Երբ մի գիշեր գոմի թառին
Քնած էին խոր ու լռին,
Լուսամուտից փոքրիկ ու բաց
Գող աղվեսն է մտնում հանկարծ,
Եվ ջոկելով լավից լավին՝
Գողանում է Ծուղրուղուին:
Ոնց է լինում, այդ ամենից
Մի աքլոր է զարթնում քնից,
Նայում է դես, նայում է դեն.
Լուսաբացը մոտ է արդեն:

Աչք է ածում կողքի թառը,
Տեսնում՝ չկա մայրիկ հավը...
Ձեն է տալիս, և այդ ձենից
Աքլորներն են զարթնում քնից,
Ու տեսնելով թառը դատարկ,
Թևիկներն են զարկում արագ
Եվ կանչում են մոտիկ, հեռու.
—Ծուղրուղո՛ւ... ո՛ւ... Ծուղրուղո՛ւ... ո՛ւ...
Բայց ո՞վ նրանց մայրիկ կտար,
Մայր Ծուղրուղուն, ավա՛ղ, չկար...
Ահա ինչու այդ օրվանից,
Երբ լուսայգն է փովում նորից,
Աքլորներն են զարթնում խսկույն,
Ասես ամբողջ թառն են հսկում,
Թևիկներն են զարկում արագ
Ու կանչում են ձայնով բարակ,
Ձեն են տալիս հեռո՛ւ, հեռո՛ւ.
—Ծուղրուղո՛ւ ո՛ւ... Ծուղրուղո՛ւ ո՛ւ...

# Կինոյի հրաշքները

## ՀԱՐՑՐՈՒ՝ ԿՊԱՏԱՍԽԱՆԵՆՔ

*Լենինականի Մ. Գորկու դպրոցի աշակերտ Ս. Մալխասյանը հարցնում է, թե ինչպես են նկարահանվում բնության աղետները կինոֆիլմերում։*

Այս հարցին պատասխանում է Հայֆիլմի կինոռեժիսյորի ասիստենտ ընկեր Դ. ՀԱՐՈՒԹՅՈՒՆՅԱՆԸ։

Կինոնկարներում մենք հաճախ ենք տեսնում այնպիսի երևույթներ, որոնք սովորական կյանքում անհնարին կլինեին։ Օրինակ, մարդը թռչում է օդում, սուզվում ջրի տակ և այնտեղ ազատ քայլում, ինչպես ցամաքի վրա, կամ դյուցազնը կռվում է յոթ գլխանի վիշապի դեմ և այլն։ Կինոնկարներում քիչ չեն պատահում նաև բնության աղետների տեսարաններ։ Ալեկոծվող ծովի մեջ խորտակվում է նավը, փոթորիկը արմատախիլ է անում ծառերը, փլվում են լեռները, այրվում շենքերը։ Խորտակվում է գնացքը, որն անցնում է հսկայական բարձրության կամուրջի վրայով։

Ինչպե՞ս նկարահանել այդ բոլորը մեր ուզած ժամանակ։

Մի՞թե, ասենք, հնարավոր է խորտակել նավը կինոնկարահանման պահին։ Իհարկե, ոչ։ Բայց չէ՞ որ մենք կինոնկարում տեսնում ենք նավի խորտակումը։ Դրա համար ծովափին պատրաստում են հատուկ ջրավազաններ, որոնց մակերևույթը ձուլվում է ծովի ջրի հետ և կազմում նրա շարունակությունը։ Ավազանի մեջ լողում է շոգենավի կամ առագաստանավի մոդելը։



Արհեստական ձևով մենք ալեկոծում ենք ավազանի ջուրը, օրորվում է «նավը», երբ անհրաժեշտ է, նաև խորտակվում։ Մինչև նավի խորտակումը առանձին նկարահանվում է իսկական նավը, որի մեջ լինում են ուղևորներ, նավի անձնակազմը, բեռներ։ Սրան կցվում է խորտակվող նավի մոդելը և ստացվում է իսկական նավի խորտակման պատկերը։

Այժմ հիշենք «Սադկո» կինոնկարի տեսարաններից մեկը։ Իր ընկերներին փրկելու համար, Սադկոն նետվում է ծովի փոթորկվող ալիքների մեջ։ Մի պահ անց, Սադկոն ստորջրյա ծովի թագավորի ապարանքում է։ Այստեղ լողում են գույնզգույն հազարավոր ծովային կենդանիներ։ Ծովի թագավորը առաջարկում է Սադկոյին ապրել իր թագավորությունում։ Խիզախ ճանապարհորդ Սադկոն մերժում է թագավորի առաջարկը, որովհետև նա պետք է գտնի ճշմարտության ճանապարհը և փրկի ժողովրդին։ Այս ամբողջ գործողությունը տեղի է ունենում «ջրի մեջ»։ Արդյո՞ք մարդն ու ձուկը կարող են ապրել միևնույն միջավայրում։ Իհարկե, ոչ։ Այս տեսարանի նկարահանման համար օգտագործվում է ակվարիումը։ Ձեզանից շատերը տեսած կլինեն տնային ակվարիում, որտեղ պահվում են ձկներ և ծովային կենդանիներ։ Կինոակվարիումը իր ծավալով ավելի մեծ է լինում։

Ակվարիումի մեջ լցնում են ծովային կենդանիներ, ձկներ, մեդուզաներ և այլն։ Հետո այն դնում են նկարահանող ապարատի և դերակատարի միջև։

Երկրորդ ակվարիումը դրվում է դերակատարից անմիջապես հետո, առաջին ակվարիումից մի քանի մետր հեռու։ Դերասանը ազատ գործում է երկու ակվարիումների միջև ընկած տարածության մեջ։ Թափանցիկ ջուրը հնարավորություն է տալիս միաժամանակ նկարահանելու մարդկանց և ծովային կենդանիներին։

Կինոնկարահանում հնարավոր է նաև ծովի խորքում։ Հատուկ ապարատների և հարմարանքների օգնությամբ, կինոնկարահանող օպերատորը իջնում է ջրի խորքը և նկարում ստորերկրյա հետաքրքիր աշխարհը։ Այդպես է նկարահանված «Երկնագույն աշխարհամաս» դոկումենտալ ֆիլմը։

Ինչպե՞ս ենք կինոֆիլմում տեսնում կամուրջի պայ-

թեցումը և գնացքի խորտակումը: Այստեղ ևս մեզ օգնության է գալիս ակվարիումը, նրա մեջ պատրաստվում է մեր ցանկացած պայթեցվող կամուրջի ճշգրիտ մոդելը՝ փոքրիկ ռելսերով, որոնց վրա դրվում է խաղալիք—գնացքը:

Ակվարիումի մեջ եղած ջուրը ստեղծում է համապատասխան դիմադրություն և «մթնոլորտ» «գնացքի» շարժման համար: Բայց չէ՞ որ գնացքը ընթացքի ժամանակ ծուխ է արձակում: Դրա համար փոքրիկ գնացքի մեջ լցնում են ծխի գույնի գորշ ներկ: Շարժման ժամանակ ծխնելույզից դուրս եկող ներկի շիթը լուծվում է ջրի մեջ, ստեղծում ծխի տպավորություն: Երբ գնացքը հասնում է կամուրջի մեր ցանկացած կետը, էլեկտրական մարտկոցի օգնությամբ պայթեցվում է կամուրջը և գնացքը վագոնների հետ միասին խորտակվում է: Մինչև գնացքի խորտակումը, առանձին նկարահանվում է իսկական ընթացող գնացքը, ուղևորներով լի վագոնի խցիկը՝ հատուկ դեկորացիաներով: Դրանք կցվում են խորտակվող գնացքի մոդելին: Այս բոլորին ուղեկցում է աղմուկը, սուլոցը, երաժշտությունը:

Մի այլ դեպքում պատրաստվում է նկարահանվող քաղաքի մակետը: Մակետի վրա կան փողոցներ, շենքեր, զբոսայգիներ: Այրվում է «քաղաքը»: Նկարահանելիս՝ երևում են այրվող բնակարանից դուրս եկող խուճապահար բնակիչները: Ինչպե՞ս է այդ արվում: Չէ՞ որ մակետի ծավալը այնքան փոքր է, որ մարդ կարող է չորսհարկանի տունը տեղավորել ձեռքի ափի մեջ: Դրա համար բնական մեծությամբ պատրաստվում է շենքի առաջին հարկը (հաճախ էլ օգտագործվում են իսկական շենքերը), իսկ հաջորդ հարկի համար պատրաստվում է մակետ: Մակետը կինոապարատի առջև այնպես է դրվում, որ իր մեծությամբ տեղադրվի մեզանից բավական հեռավորության վրա գտնվող տան առաջին հարկին և կազմի նրա շարունակությունը: Հաջորդ հարկերի մակետը նկարահանվում է այս շենքի ընդհանուր տեսարանի հրդեհի մեջ: Այնուհետև առանձին-առանձին նկարվում են մարդկանց՝ դուրս գալը բոցերի միջից, շենքի փլուզումը և այլն:

«Լեռնային լճի գաղտնիքը» ֆիլմում ինչպես հսկան, այնպես էլ Կարինեն սովորական նույն մեծության մարդիկ են: Բայց ինչպե՞ս է, որ մեկը հսկա է երևում, իսկ մյուսը՝ փոքր: Դրա համար ապարատին շատ մոտ դրվում է «հսկայի» դերակատարի սովորական ձեռքը: Ձեռքի ափին ուղղահայաց, զգալի հեռավորության վրա, գտնվում է նկարահանվող աղջիկը: Նա պետք է լինի հսկայի ափի մեջ: Պետք է տեղադրումը կատարվի այնպես ճշգրիտ, որ մենք ապարատով դիտելիս հեռվում գտնվող դերակատարին տեսնենք հսկայի ձեռքի ափի մեջ: Հեռվում գտնվողը անում է այն շարժումը, ինչ կաներ մոտիկ լինելու դեպքում: Նկարահանումից հետո այնպիսի տպավորություն է ստացվում, որ գեղեցկուհի Կարինեն, հսկայի ափի մեջ է: Իսկ առարկաները և մարդիկ հեռվից փոքր են երևում:

«Ռուսլան և Լյուդմիլա» կինոֆիլմում թռչում է կախարդը: Նրա ոտքերի տակ են մնում լեռները, ձորերը, քաղաքները:

Ինչպե՞ս է նկարահանվում այդ պահը: Որոշ բարձրության վրա պատրաստված աննկատելի հարմարանքի վրա գտնվում է դերակատարը: Նա այնպիսի ձեռքերի շարժում է անում, որ կարծես թռչում է: Նրա հետ շարժվում են ձորերի, լեռների մակետները: Փաստորեն կանգնած դերասանը թռչում է, իսկ իրականում նկարահանման ժամանակ շարժվում են շրջապատի առարկաները:

Այսպես են նկարահանվում նաև ձեզ հետաքրքրող, առաջին հայացքից բարդ թվացող մյուս կադրերը:

# ՊԱՊՆ ՈՒ ԹՈՌԸ

*ՀՈՎՍ ԱՊԵՐ*

*Գալուստ քեռին,*
*Մուրճը ձեռին,*
*Քար է տաշում ու դարսում:*
*Իսկ ,քիչ հեռու,*
*Թոռը քեռու,*
*Դեպի աղբյուրն է վազում:*
*Ջուր է բերում,*
*Հողին լցնում,*
*Հայրիկն էլ հողն է շաղում:*

*Այսպես սիրով,*
*Երգ ու տաղով*
*Շենքի պատերն են շարում:*
*Ամեն գործում*
*Օգնում է նա,*
*Հորն ու պապին շարունակ,*
*Որ տուն շինեն*
*Լավ, լուսավոր,*
*Ապրեն խաղաղ հարկի տակ:*




## ԱՇԽԱՐՀԻ ՉԵՄՊԻՈՆՆԵՐԸ

*Սկսելով այս տախտակի ներքևի ձախ անկյունի խաղադաշտից, շախմատի ձիու քայլերով անցեք տառերով նշված խաղադաշտերը այնպես, որ կարդաք շախմատի գծով աշխարհի վեց չեմպիոնների ազգանունները։*

| | | | | | | |
|---|---|---|---|---|---|---|
| Լ | Յ | Ա | Ո | Ո | Ի | Ա |
| Կ | Բ | Յ | Ն | Դ | Տ | Խ |
| Ե | Ա | | | | Բ | Ց |
| Ե | Ր | | | | Ի | Վ |
| Ա | Տ | Ն | Յ | Ն | Լ | Լ |
| Ե | Վ | Կ | Կ | Մ | Ի | Ն |
| Մ | Ի | Կ | Ն | Է | Ա | Ա |




## ԿԱՐՈ՞Ղ ԵՔ

*Այս գրքերը վերադասավորեք այնպես, որ կարդացվի Մ. Գորկու ստեղծագործություններից մեկը։*

Առաջարկ՝ Գ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ

## ԹՎԱԲԱՆԱԿԱՆ ԽՆԴԻՐ



*Այստեղ դասավորված է 36 վարդ։ Կարո՞ղ եք վերցնել 12 վարդ այն հաշվով, որ թե՛ ուղղահայաց և թե՛ հորիզոնական յուրաքանչյուր շարքում մնա նույն քանակությամբ վարդ։*



## ԿՐՈՍՎՈՐԴ-ՑԱՆՑ



*1. Գետ Ֆրանսիայում, 2. գետ ՍՍՌՄ-ի եվրոպական մասում, 3. պարի տեսակ, 4. հունգարական կոմպոզիտոր, 5. Դանուբ գետի վտակներից, 6. Գ. Սունդուկյանի «Էլի մեկ զոհ» ստեղծագործության հերոսներից, 7. Հ. Թումանյանի պոեմներից, 8. ձայնանիշի պայմանական անունը, 9. քաղաք ՍՍՌՄ-ում, 10. պետության մայրաքաղաք Ասիայում. 11. Ա. Դոդեի «Տրիտասարդ Գիմարդիա» վեպի հերոսներից, 12. հրաբխային հրահեղուկ. 13. գետ ՍՍՌՄ-ում, 14. Մ. Կորյունի վիպակը, 15. փնտանի կենդանի, 16. գետ Ուրալում, 17. պետություն Հարավային Ամերիկայում, 18. քաղաքացիական պատերազմների հերոս, 19. միութենական ռեսպուբլիկայի մայրաքաղաք, 20. գիշատիչ կենդանի, 21. քաղաք Տաջիկական ՍՍՌ-ում, 22. Հ. Թումանյանի «Գիքորը» պատմվածքի հերոսներից, 23. քաղաք Սև ծովի ափին, 24. գետ Արևելյան Սիբիրում, 25. Վերդիի օպերաներից, 26. դետային փոխադրական միջոց, 27. մրգի տեսակ, 28. Իբսենի պիեսներից, 29. ժամանակի միավոր, 30. գետ Գանամայում։*

Կազմեց՝ Վ. ԳԱՍՊԱՐՅԱՆ



# Հանելուկներ

Երկար ականջ, պոչը կարճ,
Ոչ փիղ է նա, ոչ էլ արջ:

Հնարամիտ, խորամանկ,
Պոչը՝ երկար, մորթը՝ թանկ:

Ինձնից սիրուն թռչուն չկա,
Իմ գույներից լավ գույն չկա,
Գլխիս ունեմ թագ անման,
Պոչիս վրա՝ վառ ծիածան:

Գ. ՔՈՉԱՐՅԱՆ

Օրն արևոտ
Թե լինի,
Նա միշտ քեզ հետ
Կլինի:

Մի ծառ գիտեմ,
Յոթ ճյուղ ունի,
Ամեն ճյուղն էլ
Անուն ունի:

Գ. ԳԱԲՐԻԵԼՅԱՆ

## ԱՌԱԾՆԵՐ

Նա, ով վատ է գործ անում
Եվ արածով պարծենում,
Գործելու հենց սկզբից
Ամբողջ գործն է կործանում:

Լի կարասը լռում է,
Դատարկն է, որ գոռում է:

Ա. ՇԻՐՈՅԱՆ



## ՊԱՏԱՍԽԱՆՈՒՄ ԵՆՔ

«ՊԻՈՆԵՐ» № 7

ԻՆՉՊԵՍ — Կիսակայարանում կանգնած գնացքի մեքենավարը վերջին երեք վագոնները թողնում է փակուղում, իսկ շոգեքարշը երկու վագոնի հետ տանում է առաջ: Մարդատար գնացքը հանելով փակուղուց, իր վերջին վագոնին միացնում է փակուղում եղած երեք վագոնները և նորից ետ գնում:

Այդ ժամանակ մյուս գնացքի շոգեքարշը երկու վագոնի հետ տեղավորվում է փակուղում: Մարդատար գնացքի համար ճանապարհն այժմ ազատ է:

ՁԻՈՒ ՔԱՅԼԵՐՈՎ — բոլոր զինվորներին կարելի է տախտակից հանել 16 քայլի ընթացքում: Պետք է ձին դնել այնպես, որ առաջին հարվածը հասցվի c2 զինվորին, հետո b4, այնուհետև՝ d3: b2: c4: d2: b3: d4: e6: g7: f5: e7: g4: e5: f7: g5.

Առաջին հարվածը կարելի է հասցնել նաև b3, կամ f7 և g6 զինվորներին:

ՄԱՐՄԱՖԵԼԻ ԵՐԱԶ — փոքր գնդակը կարող է թափանցել անկյունի մի անկյունում: Մեծ գնդակը որքան էլ նրան նեղի, չի կարողանա, որովհետև պատը թույլ չի տա:






„Пионер" на армянском языке. Адрес редакции. Ереван, ул. Красноармейском № 411

Հասցեն՝ Երևան, Կարմիր Բանակի փողոց № 441, հեռախոսներ՝ 2—44—83, 2—59—6

ՎՖ 08138. Պատվեր 861. Տիրաժ 5000: Տպագրական 4,5 մամուլ: Ստորագրված է տպագրության 26 VIII 1957 թ. ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության Պոլիգրաֆկոմբինատ, Տերյան 91: Գինը 2 ռ.:




## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



Շապիկի 1-ին էջը՝
նկ. Ալ. Գրիգորյանի

# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ

ՍԵՊՏԵՄԲԵՐ 1957

## ԳԵՂԱՆԿԱՐԻ ՎԱՐՊԵՏԸ

Փռված է խաղաղ լճակը՝ ինչպես հայելին: Նրա պարզ, կանաչավուն մակերեսն այնպես անշարժ է, այնպես թափանցիկ, որ ամեն ինչ անդրադառնում է լճի մեջ: Ահա մարդկանցով բեռնավորված փոքրիկ նավակը, որ սահում է ջրերի վրայով, ահա բրուչունները, ներմակ ամպերի քուլաները երկնքում: Դրանք բոլորն էլ խաղում են ջրերի հետ, թափանցում նրա խորքերը: Իսկ կղզի՜ն: Կղզին էլ կարծես ջրի խորքից բարձրացած, նորից իր ցուլքն է գցել նրա մեջ և դարձել երկուս... Կարծես տարացնում են լեռնային արևի կիզիչ ճառագայթները, լճի մակերեսի հետ խաղում է քնքույշ զեփյուռը...

Ինչքա՜ն բանաստեղծական շունչ կա «Սևանա լիճը» նկարում, որը հայ խոշոր նկարիչ Գևորգ Բաշինջաղյանի վրձինին է պատկանում:

Նկարիչը շատ էր սիրում Սևանա լիճը: Բայց ինչու միայն Սևանա լիճը: Նա հայրենի բնության երգիչն էր, նրա նկարիչը:

Պետերբուրգի Գեղարվեստների ակադեմիայի նախկին սանը շատ բան է արել հայ նկարչության, հատկապես պեյզաժի համար: Քանի՜ անգամ է նա գեղանկարել Արարատի ձյունապատ կատարները՝ իրենց անկրկնելի գեղեցկությամբ, Արարատյան դաշտավայրը... Բայց Արարատը նրա համար միայն գեղեցիկ լեռ չէր, այլ հայրենիքի սիմվոլը...

Բաշինջաղյանը դիտողին տեղափոխում է Արագածի ծաղկուն ստորոտները, Դիլիջանի ձորը, հայ ժողովրդի նվիրական վայրերը՝ Քանաքեռ՝ Աբովյանի տունը, Անի:

Ի՜նչ մեծ վարպետությամբ են նկարված «Դարյալի կիրճը», «Ալազանյան դաշտավայրը» կտավները, որոնք Կովկասյան բնության հրաշալիքներն են վերարտադրում:

Բաշինջաղյանը հայրենասեր էր,



կովկասյան ժողովուրդների բարեկամության երգիչը: Նա գիտեր ռուս և համաշխարհային կուլտուրան, խոր կերպով ուսումնասիրել էր ռեալիզմը: Նրա նկարները հասնում են 3000-ի: Դրանց մի մասը գտնվում է Հայաստանի Պետական պատկերասրահում, իսկ մնացածը՝ Սովետական Միության քաղաքներում և արտասահմանում:

Բաշինջաղյանը նաև գրող էր և հասարակական գործիչ: Նա գրել է պատմվածքներ, «Նկարչի կյանքից» հիշողությունները: Նկարիչը Կոմիտասի, Աղայանի, Թումանյանի, Փափազյանի, Իսահակյանի և այլ հայ նշանավոր գործիչների բարեկամն է եղել, Սայաթ-Նովայի գնահատողներից մեկը:

Այս տարի սեպտեմբերին լրանում է խոշոր նկարչի ծննդյան հարյուր տարին:

## ՊԱՅԾԱՌ ԼԵԳԵՆԴԸ

Մոսկվայի Կրասնայա Պրեսնյա մանկական զբոսայգում կանգնեցված է մի պատանու արձան: Պատվանդանի վրա դրոշը ձեռքին ամուր բռնել է պատանի լենինյանը:

Ո՞վ չի լսե՜լ այդ պիոների անունը: Այժմ աշխարհը գիտի հեռավոր Ուրալի խուլ գյուղակի բնակիչն:




Այդ Պավլիկն է, որ Գերասիմովկան՝ ռուսական փոքրիկ գյուղը, ճանաչել տվեց բոլորին: Երբ այդ գյուղում պիոներական ջոկատ կազմակերպվեց, Պավլիկն առաջիններից մեկն էր, որ պիոներ դարձավ: Նա ընտրվեց ջոկատի խորհրդի նախագահ:

Գերասիմովկան շատ հեռու էր ընկած կենտրոնից, բայց այնտեղ էլ հասան նոր կյանքի շողերը: Երբ երկրում գյուղացիները հիմնեցին կոլտնտեսություններ, Գերասիմովկայի չքավորները ու միջակներն էլ որոշեցին կոլտնտեսություն ստեղծել: Կուլակներին այդ բանը դուր չեկավ: Նրանք մտածեցին, որ իրենց վերջը եկել է: Դրա համար էլ ուզեցին քայքայել կոլտնտեսությունը:

Իսկ ի՞նչ էին անում նրանք. գողանում էին հացահատիկը, ուզում էին տապալել հացամթերումների գործը, գյուղացիներին թողնել կտրված տաշտակի առջև: Բայց Պավլիկը տեսավ նրանց նանգագործությունը և մերկացրեց նրանց: Չէ՞ որ նա շատ էր սիրում սովետական կարգերը, իր հարազատ կոլտնտեսությունը:



Իսկ կարո՞ղ էր այդ բանը դուր գալ կուլակներին: Իհարկե՝ ոչ: Եվ կուլակները որոշեցին սպանել Պավլիկին: 1932 թվականի սեպտեմբերի 3-ին նրանք կատարեցին իրենց սև գործը:

Պավլիկի սպանության լուրը տարածվեց ամբողջ երկրում և հուզեց բոլորին:

Քսանհինգ տարի առաջ Պավլիկ Մորոզովն ընկավ, նոր կյանքի կառուցման ճանապարհին, բայց նրա հերոսական գործը մտավ մեր երկրի պատմության մեջ:



Երևանի պետական կրկեսում պատրաստվում են Սովետական կրկեսի պատմության մեջ առաջին էկզոտիկ կենդանիների խմբի կազմակերպմանը: Խումբը ղեկավարելու է հայկական կրկեսային կոլեկտիվի արտիստ Ստեփան Իսահակի Իսահակյանը: Այդ խմբում կլինի ջահան գետաձիու մի հազվագյուտ ձմուշ:

ՆԿԱՐՈՒՄ—Հայկական կրկեսային կոլեկտիվի արտիստ Ս. Ի. Իսահակյանը իր սանի՝ ջահան գետաձի «Մանուկի» հետ:

Լուսանկար՝ Է. ԱԲՐԱՀԱՄՅԱՆԻ

Երեկոն Սևանում



Լուսանկար՝ Է. ՎԱՐԴԱՆՅԱՆԻ